1916 № 30.—*Յուլիսի* 24

**ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ**

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 ԿՈՊԷԿ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** **տարեկան 4** *րուբլի*, **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.*, **կէս տարուան 2** *ր.* *Արտասահման՝* **տարեկան 5** *ր.*, **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաարադեան հրապար.* № 7.

**Հեռախօս № 29.**

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбавaберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2՝ բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ԳՆԴԱՊԵՏ ՄԱՐԳԱՐ ԴՐԳԵՐԻ

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ ԹԵՐԹԻՍ ԿԻՍԱՄԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐԻՆ

*«ՀԱՄԲԱՒԱԲԵՐԻ» խմբագրութիւնը խնդրում է կէս տարուայ բաժանորդներից՝ շուտով վերանորոգել բաժանորդագրութիւնը, այլապէս «Համբաւաբեր»-ի առաքումը կը դադարեցնենք յուլիսի 30-ից։*

## Համաշխարհային պատերազմը

### ՊԱՏԵՐԱԶՄԻ ԵՐՐՈՐԴ ՏԱՐԵՇՐՋԱՆԸ

*Համաշխարհային պատերազմը թևակոխում է արդէն երրորդ տարին։ Ամսոյս 14-ին լրացաւ Աւստրօ-սերբիական պատերազմի երկամեակը, իսկ 19-ին լրացաւ երկու տարին այն չարաղէտ օրից, երբ Գերմանիան մարտակոչ ուղղեց Ռուսաստանին և այս ահաւոր պատերազմի հրդեհը վառեց ամբողջ երկրագունդը։*

*Երկու տարի պատերազմ—հեշտ է ասել խօսքով. չէ՞ որ պատմութիւնից գիտենք, որ մարդկութիւնն ապրել է եօթնամեայ, երեսնամեայ, մինչև անգամ հարիւրամեայ պատերազմների արհաւիրքները։ Սակայն երբ մտածում էք այն միլիոնաւոր դեռատի կեանքերի մասին, որոնք այսօր հանգչում են սառր հողի գրկում, երբ ձեր աչքի առջևից անցնում են հաշմանդամների հարիւր*

հազարանոց բանակները, աւերուած քաղաքները, հրդեհուած գիւղերը և կործանուած կուլտուրական յիշատակարանները. վերջապէս երբ մարդ հաշուի է առնում ժողովուրդների արիւն-քրտինքով ձեռք բերուած այն տասնեակ միլիարդները, որ վատնուել են երկու տարուայ ընթացքում այս աւերիչ ձեռնարկի վրայ՝ այն ժամանակ միայն հասկանալի է դառնում թէ ինչ ահռելի մղձաւանջ (կոշմար) է երկամեայ պատերազմը մեր ժամանակներում։ Եւ եթէ չլինէր այն գիտակցութիւնը, որ այս համատարած թշուառութիւնը մի անողոք պատմական անհրաժեշտութիւն էր և այն յոյսը, որ այս վերջինն է լինելու, որ մարդկութեան համար այս պատերազմից յետոյ յաւիտենական խաղաղութեան արշալոյսն է բացուելու՝ կուլտուրական մարդը կը խորտակուէր այդ մղձաւանջի ծանրութեան տակ։

Նոր տարեշրջանի սկզբին պատերազմական դաշտի պատկերը նախորդ տարիների համեմատութեամբ բաւական փոխուել է։ Պատերազմի առաջին տարին գերմանական զինակցութեան զօրքերը յաղթական՝ արշաւանքներ էին կատարում թէ դէպի արեւմուտք և թէ արեւելք։ Ճիշտ է, Մարնի վրայ, Իպրի մօտ, Գալիցիայում, Իվանգորոդի և Վարշաւայի տակ նրանց բանակները ծանր հարուածներ կրելով՝ մի քանի տեղ կանգ առան. իսկ մի քանի տեղ էլ յետ ընկրկեցին, բայց և այնպէս թշնամին, բացի Գալիցիայից, մնացած բոլոր զօրաճակատներում այդ ժամանակ ձեռներէց էր։

Պատերազմի երկրորդ տարեշրջանի սկզբում գերմանական զինակցութիւնը աւելի նպաստաւոր պայմանների մէջ էր գտնւում։ Ռուսաց բանակները ռազմամթերքի պակասութեան և թիկունքի անկազմակերպ վիճակի պատճառով ծանր կորուստներ տալով՝ զիջել էին թշնամուն ոչ միայն գրաւած աւստրիական գաւառները, այլ և Լեհաստանն ու բուն ռուսական մի քանի նահանգներ. իսկ Ֆրանսիան ու Անգլիան այդ ծանր օրերին կառչած իրենց խրամատներին՝ հազիւ էին իրենց պաշտպանում, ուր մնաց թէ կարողանային օգնութեան հասնել նեղն ընկած դաշնակցին։ Տարուայ ընթացքում դաշնակիցների դրութիւնն աւելի ծանրացաւ։

Գերմանական զինակցութեան կողքին հանդէս եկաւ Բուլղարիան, որ աւստրիացոց հետ միասին գրաւեց Սերբիան ու Չերնոգորիան։ Դարդանելում դաշնակիցներն ստիպուեցին դադարեցնել ցամաքային գործողութիւնները, որովհետև այդ գործողութիւնները շատ թանգ էին նստում իրենց վրայ։

Փոքր ինչ ուշ լուրեր հասան Միջագետքում գործող անգլիական զօրքերին հասած անյաջողութեանց մասին, իսկ մի քիչ էլ անց՝ իտալացիներին հասաւ հարուածի բաժինը.—աւստրիացիք զգալի կորուստներ պատճառելով նրանց զօրքին՝ պատերազմական գործողութիւնները տեղափոխեցին բուն իտալական հողը։

Այսպիսով պատերազմի երկրորդ տարին գերմանական զինակցութիւնը կարելի է ասել իր յաջողութիւնների գագաթնակէտին էր հասել։

Նոր տարեշրջանի սկզբին նրա վիճակը բոլորովին այլ է։ Վերդէնի՝ տակ տուած իր հսկայական զոհերից յետոյ Գերմանիան ըստ երևոյթին եկել է այն խոր համոզման, որ ի դէմս ֆրանսացիների իր հանդէպ կանգնած է մի անպարտելի հակառակորդ։ Բուկովինայում, Գալիցիայում և Վոլինիայում ռուսների յաղթական առաջխաղացութիւնը ուղղակի շշմեցուցիչ տպաւորութիւն է թողել թշնամու վրայ։ Եւ այլ կերպ ինչպէս կարող էր լինել, երբ «անդամալոյծի» հռչակ ստացած ռուսական զօրքի առաջ աւստրօ-գերմանական զօրաբանակներն ուղղակի հալւում են... Ռուսական առաջխաղացութեան այս տագնապալից օրերում ծանր հարուած է հասնում գերմանացիներին նաև Սոմ գետի հովտում, անգլօ ֆրանսական միացեալ բանակների կողմից։ Եթէ Վերդէնի կռիւները Ֆրանսիայի դիմադրական կորովի ապացոյց էին տուել Գերմանիային՝ Սոմի կռիւները անգլիացիների ու ֆրանսացիների յարձակողական ուժի անվիճելի փաստերը հանդէս բերին։ Այս բոլորի վրայ աւելացնելով և այն, որ Իտալացիք արդէն գրեթէ դուրս են մղել աւստրիացիներին իրենց երկրից, իսկ ռուսները հարուած հարուածի յետևից հասցնելով թիւրքերին շպրտել են Եփրատի այն կողմը, այն ժամանակ պարզ կլինի, թէ գերմանական զինակցութեան վիճակը նոր տարեշրջանի սկզբին ինչքան տագնապալից է ռազմական տեսակէտից։

Աւելի լաւ չէ նրանց վիճակը տնտեսական և քաղաքական տեսակէտներից։ Մինչդեռ դաշնակիցները հետզհետէ կազմակերպում և ներդաշնակում են իրենց քաղաքական և տնտեսական ուժերը, թշնամին օրէցօր նոր ապացոյցներ է տալիս իր ներքին ուժերի սպառման և քայքայման։

Այսպիսի հանգամանքներում ամենևին աւելորդ լաւատեսութիւն չի լինի եթէ ասենք, որ գերմանական զինակցութեան օրհասը մօտ է։

Մենք չենք անգիտանում, հարկաւ, որ անագորոյն թշնամին մինչև անկենդան գետին գլորուելը դեռ շատ զոհեր պէտք է տանէ և շատ փորձանքներ բերէ իր դէմ ծառացած քաղաքակիրթ մարդկութեան գլխին. բայց այդ նոր զոհերն և փորձութիւնները այլևս ոչ ոքի չպէտք է շփոթեցնեն։ Երկու տարի է մարդկութիւնը լողում է արեան ծովերում. ինչով կարդարանան այս ահռելի տառապանքները, եթէ նոր զոհերի երկիւղից թոյլ տրուի, որ նրանց հեղինակները անպատիժ դուրս գան իրենց գլխին կախուած դամոկլեան սրի տակից։ Ոչ, պատերազմը պէտք է շարունակուի, մինչև որ այդ սուրը ջախջախէ այսքան չարիքներ նիւթող միլիտարիստական հիդրայի գլուխը։

Գուցէ կարելի է առարկել, որ մարդկութեան փրկութեան համար այս բ ա ւ ա ր ա ր պայման չէ. բայց որ այդ ա ն հ ր ա ժ ե շ տ պայման է, այդ մասին առարկութիւն լինել չի կարող։

Ա. Զ.

---

# ՌԱԶՄԱԲԵՄԸ

## *ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ*

Երզնկայի գրաւումից յետոյ, ռուս յաղթական զօրքը, յաջող յառաջխաղացումներով, քայլում է դէպի Սվազ և Խարբերդ ու հետզհետէ ձեռք բերում կարևոր դիրքերը և ետ մղում դիմադրող թշնամու ուժերը։ Սվազի խճուղու վրայ գերի են ընկնում ոչ միայն զինուորներ, այլև տասնեակ սպաներ։ Թիւրք կառավարութիւնը ստիպուած է ետ քաշել իր զօրքը դէպի Սվազ և պատրաստուել կատաղի դիմադրութեան։ Սակայն թիւրք բանակի լքումը ակներև է. միայն Պարսկաստանի սահմանների—Համադանի և Քիրմանշահի կողմերումն է, որ թշնամին կարողանում է թեթև յաջողութիւններ ձեռք բերել։ Խալիլ բէյը մզկիթներում դրգռիչ քարոզներով ճգնում է Պարսկաստանի ազգաբնակութիւնը թշնամի պահել Ռուսաստանին, աշխատում է ոտքի հանել թափառիկ ցեղերին և Բաղդադի ուղղութեամբ ռազմագիծը յամառօրէն պաշտպանել ռուսական քայլերի դէմ։ Սակայն Փոքր-Ասիայում սպաներից սկսել են դասալիք լինել, խոլերան կատաղի կերպարանք է ստացել, թիւրք կառավարութիւնը ստիպուած է 18 տարեկաններին զէնքի կոչել։ Յառաջիկայ շաբաթ պիտի սպասել նորանոր դէպքերի։ Թիւրքերի ուժերը զգալապէս ջլատւում են. դժուարութեամբ կարող են նրանք նոր ուժեր ստանալ և ռուս զօրքի յառաջխաղացումը այնպէս հեռուներն է անցել, որ Խարբերդն ու Դիարբեքիրը գտնւում են սպառնալիքի տակ։

## *ԱՐԵՒՄՏԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ*

Յաջող սկսած յարձակումներն ու գործողութիւնները Կովէլի և Բրոդու ուղղութեամբ՝ մեծապէս զարգանում են և հետզհետէ գրաւում նորանոր շրջաններ։ Ստոխոդ գետի մօտ մեր յարձակուող զօրամասերը ամրանում են և միաժամանակ յաջող կռիւներ մղում։ Այս շրջանում առնուած գերիների թիւը շատ մեծ է։

Գերմանացիները մեղադրում են աւստրիացիներին, որ ետ քաշուելով՝ մերկացրին գերմանական ճակատը։

Ստոխոդ գետի վրայ, Գուլևիչի շրջանում, ռուս զօրքը արդէն անցել է աջ եզերքը և ամրացել, իսկ Կովէլ—Ռոժիցէ երկաթուղու գծի ուղղութեամբ շարունակում է առաջ գնալ։ Բրոդին առնելուց յետոյ այնքան մեծ է առհասարակ գերուած թշնամիների և յաղթական աւարների թիւը ամեն ուղղութեամբ, որ դեռ բոլորը ճիշտ չի հաշուած։ Առայժմ պարզուած է, որ զօրավար Բրուսիլովի բանակը 15-ին և 16-ին յուլիսի գերի է առել՝ 2 զօրավար, 651-ից աւելի սպայ, 32,000 զինուոր, 91 ծանր և 114 թնդանօթ, որոնցից 29-ը ծանրատար։ Զօրավար Լէչիցկու բանակը խլել է 21 գերմանական ծանր թնդանօթ, 85 գնդացիր։ Գեներալ Սախարովը Բրոդու տակ մղած երեքօրեայ կռուի միջոցին գերել է՝ 216 սպայ, 13,566 զինուոր, 9 թնդանօթ, 40 գնդացիր և մօտ 15,000 հրացան։ Զօրավար Սախարովը ընդամենը գերել է, յուլիսի 3—15-ը, 940 սպայ, 39,152 զինուոր, 49 թնդանօթ (17-ը ծանր), 100 գնդացիր, 39 ռմբաձիգ, 80 արկղ ռումբ, 76 ռազմամթերքի արկղ, 58 գնդացիրային սայլեր և 6 մթերանոց ռազմամթերային և ինժեներային։

Թշնամին այժմ ուղղակի յուսահատ կռիւներ է մղում ցամաքի և ծովի վրայ, օդային արշաւանքներ է կազմում դէպի Անգլիա և Ռուսաստան. սակայն հետզհետէ նրա շուրջը աւելի և աւելի է սեղմւում օղակը, որ և պիտի վերջ դնէ նրա այսքան երկարատև վայրագ ձգտումներին։

## ԱՆԳԼՈ ՖՐԱՆՍԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևմտեան Եւրոպայի ռազմաբեմի վրայ վերջերս թշնամին յամառ կռիւներ է սկսել Պերրոնի շրջանում, ինչպէս և Վերդէնի տակ։

Մի շարք կատաղի հակայարձակումներով գերմանացիները ճգնում են առաւելութիւններ ձեռք բերել Սոմ գետի եզերքներին, կամենալով դաշնակիցների յետագայ գործողութիւնները ջլատել։ Առանձնապէս յամառ կռիւներ տեղի ունեցան Լօն Գեւալ գիւղի շրջակայքում, Սոմմից 10 քիլոմետր դէպի հիւսիս։ Անգլիացիները սակայն յաջողեցին ետ նետել թշնամուն, գրաւել Դէլվիլեան անտառը, Պօզերի ամրութիւնները և կամաց կամաց շարժուել Սոմ գետի ամբողջ ճակատի ուղղութեամբ։ Ստացուող լուրերին նայելով՝ թշնամին դեռ ևս ետ չի կանգնել Վերդէնը առնելու մտքից, ծայրայեղօրէն լարում է իր ույժերը և ճգնում է փշրել ֆրանսացիների հերոսական դիմադրութիւնը։

## ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Վճռական գործողութիւնների նշաններ են երևում այս ռազմաբեմի վրայ։ Բուլգարիայի համար հասել են ծանր օրեր և դաշնակիցների կենտրոնացած հարուածներից պաշտպանուելու րոպէները։ Սերբիայի զօրքն արդէն սկսել է յարձակումներ՝ քշելու բուլգարներին յունական հողից դուրս և գրաւելու ամրութիւնները։ Միւս կողմից Ռումինիան թւում է թէ շարժուելու է հենց որ երկրի հունձերը վերջանան։ Այդ մասին կարծիքները տարբերւում են։ Ասում են՝ այդ պետութիւնը, բաւական հեռատես զգուշաւորութեամբ, սպասում է ոչ միայն հունձերի վերջանալուն, այլև դաշնակիցների կողմից մի մեծ յաղթանակի։ Բայց այն ժամանակ էլ արդեօք պէտք կունենա՞ն նրան և կստանա՞յ որևէ օգուտ իր միջամտութիւնից։ Յամենայն դէպս վերջին լուրերը հաղորդում են, որ նոր տարաձայնութիւններ են տեղի ունեցել բուլգար և ռումէն կառավարութիւնների միջև, որովհետև բուլգար զօրքը ներս է մտել ռումանական չէզոք հողը Դոբրուջայի կողմից։ Ռումինիայի բանակը հրահանգ է ստացել լաւ հսկելու, որպէս զի բուլգարները յանկարծակի ներս չը խուժեն Ռումանական հողը։

---

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Տեղական իշխանութեանց և հասարակական կազմակերպութեանց տուեալների համաձայն, սոյն թուի յուլիսի 1-ին փախստականների թիւը Կովկասում, Ստաւրոպոլի նահանգում և Թիւրքիայի ու Պարսկաստանի նորանուաճ վայրերում հետևեալն էր. Երևանի նահանգում 93,147 հոգի, Գանձակի՝ 6,999, Ստաւրոպոլի՝ 5,626, Թիֆլիսի՝ 7,400, Բագուի՝ 36 (?), Թերէքի՝ 3,762 հ., Կուբանի շրջանում՝ 14,322 հոգի, Կարսի՝ 13,000, Չեռնոմորի նահանգում՝ 2,048 հ., Վանի շրջանում՝ 9,243 հ., Բայազիդի շրջանում՝ 273 հ., Դիադինի՝ 7,500 հ., Արճէշի՝ 443 հ., Բաշկալէի՝ 2,631, Պարսկաստանի փոխ-հիւպատոսական շրջաններում՝ Ուրմիայի շրջանում 16,000 հ., Խոյի՝ 20,000 և Թաւրիզի՝ 1,000 հ.։

—

Յուլիսի 19-ին լրացաւ պատերազմի երկու տարին։ Այդ առիթով, արտաքին գործոց նախարարն արել է հետևեալ յայտարարութիւնը.—«Սկսելով պատերազմի երրորդ տարին՝ Կայսերական կառավարութիւնը, ինչպէս և նրա հաւատարիմ դաշնակիցները, աւելի քան երբեք, անխախտ որոշել են՝ սկսած պատերազմը շարունակելու մինչև վերջնական և կատարեալ յաղթանակը։ Պատերազմի այն երկու տարին, որ նուիրագործուել է դաշնակից բանակների զէնքերի եղբայրութիւնով, նրանց հերոսութեամբ և թափած արիւնով—աւելի ամուր շղթայեցին համաձայնութեան պետութիւնների ձգտումը՝ ազատելու Եւրոպան սպառնացող գերմանական գերիշխանութեան լուծից։ Բոլոր ճակատներում դաշնակից բանակները հակառակորդի գլխին են կշռում հարուած հարուածի ետևից։ Ես համոզուած եմ, որ Բարձրեալի օգնութեամբը կը յաջողուի մեզ ջարդել թշնամուն և հասնել մեր արդար գործի յաղթանակին»։

—

Պետ. Դումայի անդամ պ. Պապաջանեանը հեռագրել է գեն. Թամամշեանին, թէ փախստականների գործի համար կազմուած յատուկ խորհրդակցութիւնը Կովկասի փախստականների պահպանութեան համար, յուլիս—սեպտեմբերի ծախքերին գործադրելու նշանակել է 5,050,000 ռ.։

—

«Ռուս. Սլովօ»-ն հաղորդում է, որ Շտիւրմերի կարծիքը լեհական հարցի մասին Կայսերական կայանում քաջալերութեան է հանդիպել։ Յուլիսի 15-ի նախարարական խորհրդի նիստի մէջ քննուել է լեհական ինքնավարութեան հարցը և մշակուել է վաղուց սպասուած հրովարտակը Լեհաստանի մասին։

—

Որոշուած է Ռուսաստանում վերականգնել հինգ նախարարներից կազմուած առանձին խորհրդակցութեան գործունէութիւնը իբր յատուկ մասնաժողովի։

—

Քաղաքների Միութեան Կովկ. բաժանմունքը Տրապիզոնում զինուորների համար բաց է անում մի հիւանդանոց 100 մահճակալով և չորս սննդատու և մի փոխադրական կայան։

—

## ՆՈՐ ԶՕՐԱԿՈՉԻ ԱՌԹԻՒ

Կովկասեան բարձր իշխանութիւնը միջնորդել է, որ I և II

կարգի ռամիկների զօրակոչը յետաձգուի մինչև առաջիկայ հոկտեմբեր 1-ը։

Ամբողջ Ռուսաստանի բոլոր գիւղատնտեսական և երկրագործական հաստատութիւնները նոյն տեսակի միջնորդութիւն են յարուցել։

## ԳՆԴԱՊԵՏ ՄԱՐԳԱՐ ԳՐԵԳԸՐԻ

Այսօրուան Թուով տալիս ենք Լոնդոնի հայկական գաղութի արժանաւոր ներկայացուցիչ գնդապետ Մարգար Գրեգըրիի լուսանկարը։ Նա ծնուել է Կալկաթա 1851 դեկտեմբերին, Շիրազից դէպի Հնդկաստան գաղթող մի հայ վաճառականի զաւակը։ Իր կրթութիւնը ստացել է Անգլիայում, ուր նա ուսել է համբաւաւոր Հարրօ դպրոցում և ապա Գեմբրիջի համալսարանի Trinity կոլլէջում։

1872-ին նա վերադարձել է Հնդկաստան և մտել է Հնդկական կառավարութեան ֆինանսական մինիստրութեան մէջ, ուր նա հասել է բարձրագոյն պաշտօնի։ Նա իր ծառայութեան տարիներին յաճախ այցելել է Անգլիա, ուր ամուսնացել է իրլանդական յայտնի Շէտիզըն ընտանիքից մի օրիորդի հետ։ 1902-ին նա հրաժարուել է ծառայութիւնից և այնուհետև հաստատուել է Անգլիա հոգ տանելու իր երկու զաւակների կրթութեան։

Հնդկաստանում եղած ժամանակ նա եղել է մի գործօն անդամ կամաւոր բանակին, ուր նա ստացել է սպայութեան աստիճան և երկու անգամ նշանակուել է հրամանատար այդ բանակին։

Իբրև արդիւնք իր եռանդուն ծառայութեան նա ստացել է Volunteer officers Decoration տիտղոսը Անգլօ-Հնդկական կառավարութիւնից։ Եւ երբ քաշուեց բանակից, նա արտօնուեց պահել Lientenant colonel-ի աստիճանը և բանակի համազգեստը։ Իր երկու զաւակները Թոմ և Ճօն այժմ մասնակցում են պատերազմում Բրիտանական բանակին իբրև կամաւորներ։ Առաջինը, որ մի ինժեներ էր հնդկական երկաթուղիների վրայ, այժմ Lientenant է Բրիտանական Արքայական ինժեներների զօրագնդում և ծառայում է Միջագետքում սապէօրների գնդում, իսկ երկրորդը, իրաւաբան, այժմ Ֆրանսիայումն է Բրիտանական 9-րդ հեծելազօրքի Զօրագնդում իբրև սպայ։

Անգլիայում հաստատուելուց ի վեր գնդապետ Գրեգըրին իր եռանդուն կեանքը նուիրել է մեր ազգային և գրակ. գործունէութեան։ Թէև հայրենիքը երբէք չըտեսած, բայց սրտով ու մտքով հայրենիքին կապուած, նա պատանեկան խանդավառութեամբ յարել է հայ ազատագրութեան դատին, լայնօրէն տալով իր միտքը, կարողութիւնը, ժամանակը առանց որևէ պայմանի կամ ակնկալութեան։

Նա գործակցել է մի յայտնի պատմագրի 4—5 տարի, յետոյ Անգլերէնի թարգմանել սրբ. Օրմանեանի «Հայաստանեայց եկեղեցի» գործը, ինչպէս նաև Զօպանեանի «Հայաստանի ժողովուրդ» գրքոյկը։ Նա արդէն պատրաստում էր հայոց ժողովրդական պատմութիւնը Անգլիացոց հասարակութեան համար, երբ պայթեց Եւրոպական պատերազմը։ Իր գրական ջանքերը այնուհետև փոխադրուել են քաղաքական և մարդասիրական ասպարէզի վրայ։

Նրա եռանդով և ուրիշ հնդկահայերի մասնակցութեամբ վերակազմուեցաւ Լոնդոնի Հայոց Միացեալ ընկերութիւնը 1913-ին, որի նախագահն է 1913-ից ի վեր։ Նա հիմնեց և շարունակում է խմբագրել Լոնդոնի «Ararat» ամսագիրը, որ կատարում է կարևոր դեր հայկական պրոպագանդի համար, իսկ մի քանի ամսից ի վեր նա պատուակալ-գանձապահն է Լոնդոնի Լորդ-Մէրի հայկական ֆոնդին, որի կատարած գործը և Հայաստան ուղարկած միսիան ծանօթ է արդէն մեր ընթերցողներին։ Միաժամանակ նա փոխ-նախագահն է օր. Ռաբինսընի հիմնած «Հայկական Կարմիր խաչի և փախստականների ֆոնդի» յանձնաժողովին. Նա հայ գաղութի ներկայացուցիչն է ընդունուած Անգլ. կառավարութիւնից և լռիկ մնջիկ կատարում է շատ մեծ աշխատանք։

Ա. Ս.

## ՀԱՅԵՐԷՆ՝ ՀԱՅՈՒԹԻՒՆ *)

### Բ

Բայց անցնենք մի նոր խնդրի։ Ի՞նչ ասել է հայերէն խօսել։ Հայերէն խօսել նշանակում է հայ մանկութեան և պատանեկութեան բիւրաւոր մտապատկերն ու զգացմունքները, հայ երիտասարդութեան բոլոր նուիրական գաղափարներն ու զգացումների երանգները ձևաւորել ու հնչել այն բառերով, առանց որոնց այդ ամենը չի արտայայտուի իր ամբողջութեամբ, կենդանի ոգով։ Իր երեխի տեսութեանն սպասող մայրը մինչև չասի՝ «Մ ա տ ա ղ  ե մ  ի մ  ե ր ե խ ի ս, այնքան եմ  կ ա ր օ տ ե լ, ջրի պէս կարօտել եմ. ե ր ա ն ի՜  ծ ի տ լինէի, թռչէի գնայի մօտը...», մինչև այսպէս չասի՝ կարո՞ղ է գոհ մնալ իր ասածից։ Այսպէս գոհ կը մնայ, որովհետև այս բառերով թերևս նրա հ ո գ ե բ ա ն ո ւ թ ի ւ ն ը արտայայտուի։ Իսկ  ա ր տ ա յ ա յ տ ո ւ թ ե ա ն  կ ա ր օ տ  մ ի տ ք ն  ո ւ  զ գ ա ց մ ո ւ ն ք ը  ե թ է  ա մ բ ո ղ ջ ո վ ի ն  չ ե ն  ա ր տ ա յ ա յ տ ւ ո ւ մ՝  ն ո յ ն  բ ն ա խ օ ս ա կ ա ն  հ ե տ և ա ն ք ը ն  ե ն  ա ռ ա ջ  բ ե ր ո ւ մ  մ ե ր  մ է ջ,  ի ն չ  ո ր  մ ե ր  մ ա ր մ ն ի  մ է ջ  ա ւ ե լ ո ր դ  ն ի ւ թ ե ր ը՝  թ ո յ ն ը,  ք ր տ ի ն ք ը,  վ է ր ք ը  և  ա յ լ ն,  ո ր  կ ա ր ի ք  ո ւ ն ե ն  դ ո ւ ր ս  գ ա լ ո ւ  մ ա ր մ ն ի ց,  ա յ լ ա պ է ս  կ ը  հ ի ւ ա ն դ ա ն ա ն ք։ Մայրենի կամ մի այլ լաւ իմացած լեզուով խօսել՝ նշանակում է ազատուել մտքի ու զգացմունքի ճնշումից, թեթևանալ, կատարել հոգու մի բնական կարիք։ Այսպիսով պարզ է, որ հայերէնը կամ մայրենի լեզուն կամ լաւ իմացած լեզուն միակ անցքն է, որով դուրս է գնում մեր հոգու խտացած գոլորշին՝ եթէ թոյլ կը տաք, որ մեր հոգին նմանեցնեմ մի գռեհիկ հեշտաեռի։ Ով ինչ լեզուով է վիճաբանում, արտայայտում է իր յանկարծակի զայրոյթը, սէրը, ով ինչ լեզուով  հ ե շ տ  է խօսում, ով ինչ լեզուով է խօսում իր մանկութիւնից՝ նա այն լեզուն է ընտրում (յաճախ աննկատելի), դարձնում մայրենի, հարազատ։ Ով իմանում է, բայց չի խօսում հայերէն՝ նա իր լեզուն ետ է վարժեցնում, մշակում է իր նոր խօսածը, վարժւում է իր նոր խօսածի մշակած ձևերին, ինքը ընտելանում է ուրիշ լեզուի լսելով, ընտելացնում է ուրիշներին լսեցնելով այն։ Ով չի խօսում իր մայրենի լեզուով՝ նա ամեն տեղ ուրիշներին գցում է այն մոլորութեան մէջ, թէ «հիմի առհասարակ  չ ե ն  խ օ ս ո ւ մ  այդ մայրենի լեզուով»։ Բայց թողնենք այս հայերէն իմացողներին բայց չը խօսողներին, որ թաղեն իրենց մեռելները և անցնենք միջնաբերդը, այսինքն՝ հայերէն իմացողներին և խօսողներին։

Հայերէն է խօսում ժողովուրդը և մտաւորականութեան մի մասը։ Չեմ ուզում այստեղ քննել այն հարցը, թէ որքան կամայ և ակամայ է հայ ժողովրդի և հայ մտաւորականութեան հայերէն խօսելը։ Նախ՝ որ այդպիսով պէտք է շատ շատերի մաղձը շարժեմ, երկրորդ՝ պէտք է յոռետեսի հռչակ վայելեմ, որ չեմ իսկապէս, և երրորդ՝ մի քանի ինձնից անկախ պատճառներ կան, որ թոյլ չեն տայ մտնելու այդ հարցի մանրամասնութիւնների մէջ։ Թէև, անցողակի ասեմ, շատ էական խնդիր է՝ թէ ինչու են հայերէն խօսում և արդեօք չեն սպասում յարմար առիթների ու պայմանների՝ վերջացնելու այդ հայախօսութիւնը։ Ինձ համար գոնէ այդ խնդիր է։ Անցնենք բուն խնդրին։ Հայերէն խօսող ժողովրդին ես կուզենայի ամեն պատասխանատուութիւնից ազատել։ Եւ ինչպէս կանչես պատասխանատուութեան մի զանգուածի, որ ապրում է հայ մտաւորականութեան կեանքին անմասնակից

*) Տես «Համբաւաբեր» № 25։

(այսինքն՝ այն ձեւերը, որոնց գրականը ամենքն արդէն ընդունել են՝ ինչպէս՝ ասում է, կըլնի, վերցնում է, փոխանակ՝ ասըմ ա, կըլի, վեր ա ունում) մենք ամենաքիչը դանդաղացնում ենք գրականի կանոնաւորումը: Մաքուր չըխօսելու հետեւանքը կըլնի և այն, որ օտար բառերը (անտեղիները, որոնց հայերէնը ընդունուած է արդէն՝ ինչպէս՝ ծոցատետր, կայարան, տոմսակ) գործածելով խօսակցականի մէջ կամաց կամաց զուտ հայերէն բառերը քշում ենք դէպի գրականը, դէպի գիրքը, լրագիրը, դպրոցը: Բայց այսպիսով դպրոցն ու լրագիրը, որ շատ մօտ են կանգնած խօսակցական լեզուին՝ ազդւում են, և մենք արդէն սկսում ենք ականատես լինել մի շարք «սխալ»-ների, որ սպրդում են լրագրի էջերում և դպրոցում: Այդ սխալները կըյաճախեն, հոսանք կըդառնան և նրանց առաջն առնելու համար հարկ պիտի լինի անօգուտ կռիւ մղել ապագայում: Պիտի մնայ բարձր գրականութիւնը՝ գիտութիւնն ու գեղարուեստական երկը, որոնց պիտի ապաստանեն զուտ հայ բառերը: Բայց գիտական ու գեղարուեստական երկը ոչ այժմ և ոչ ապագայում չըպիտի կարողանան մեծ ազդեցութիւն ունենալ գործնական կեանքի վրայ: Այսպիսով ուրեմն մենք այն ճամբի վրայ ենք, որ մեզ տանում է դէպի մի երկրորդ գրաբար: Հաւատացնում եմ ձեզ, մեր օրերի հայ աշակերտը այնպէս լաւ չի հասկանում Րաֆֆու և Մուրացանի լեզուն, ինչպէս 20 տարի առաջ մենք: Նա այժմ միայն գլխի է ընկում շատ բառեր ու արտայայտութիւններ. որովհետև դրանց լրագրներում և խօսակցականի մէջ այլ ևս նա շատ չի պատահում:

Լեզուն ոչ թէ պահծու, թանկագին զգեստ է, որ կողպենք պահարանում և տօն օրերին հագնենք, այլ նա կօշիկ է, գդալ, բաժակ, որ ամեն օր գործ ենք ածում, որոնց ամեն օր պահանջ ունենք:

Վայն եկել տարել է այն լեզուներին, որ թանկագին առարկաների, թէկուզ սրբերի նման պահում են տան անկիւնում: Նըրանք այսօր յիշւում, խնամւում են, վաղը կըմոռացուին, իսկ վաղուայ սերունդը չի էլ իմանայ թէ նա կայ և սպասում է մեր պաշտամունքին: Սեղանի աղը աւելի պէտքական և դիմացկուն բան է քան թանգարանում պահած մագաղաթ ձեռագիրը: Պէտք է լեզուն դարձնենք սեղանի աղ: Եւ ով ուզում է հայախօսութեան կեանքը ապահովել՝ նա ոչ թէ պիտի իմանայ հայերէն, ոչ թէ պիտի խօսի հայերէն, ոչ թէ միայն ինքը պիտի իմանայ կամ խօսի հայերէն, այլ պէտք է մաքուր խօսի հայերէն և խօսել տայ մաքուր հայերէն:

Որովհետև հայերէն նշանակում է հայութիւն:

Դէմիր

## ԼԵՐՄՈՆՏՈՎԻ ՄԱՀՈՒԱՆ 75 ԱՄԵԱԿԻ ԱՌԹԻՒ

Յուլիսի 15-ին լրացաւ Կովկասի երգիչ ռուս մեծ բանաստեղծ Մ. Լերմոնտովի մահուան 75 ամեակը: Ինչպէս յայտնի է, այդ բանաստեղծը զինուորական էր և մենամարտի մէջ ընկաւ Մաշուկ և Բեշտաու լեռների միջև գտնուող մի վայրում:

Համեստ մի հանդէսով տօնուեց այդ մեծ յիշատակը՝ բանաստեղծի նախնական գերեզմանի առաջ:

Այդ առիթով «Բագու» թերթում մի քանի յիշողութիւններ կայ գրուած, որոնցից մէկը առանձնապէս շահագրգիռ լինելով՝ տալիս ենք թարգմանաբար:

...«Միայն բարձր իշխանութիւններն էին, որ գնահատել չըգիտեն Լերմոնտովի բարձր արժանիքները, տեսնելով նրա մէջ «խռովարար» մի ոգի, վտանգաւոր՝ կարգապահութեան (դիսցիպլինայի) համար: Երբ զօրավար Գալաֆէևը միջնորդեց որ Լերմոնտովին շնորհեն Ս. Վլադիմիրի 4-րդ աստիճանի շքանշանը ժապաւէնով, իսկ իշխան Գոլիցինը խնդրեց նրա համար ոսկեայ սուր՝ Չէչէնիայի վրայ ուղարկած արշաւանքին քաջաբար մասնակցելու համար—Պետրոգրադում շատ անբարեհացակամ վերաբերուեցին այդ միջնորդութեանը և մերժեցին մինչև իսկ 3-րդ աստիճանի Ստանիսլաւ տալ. նոյն իսկ հրաման տրուեց թոյլ չըտալ Լերմոնտովին՝ գնդից որևէ տեղ հեռանելու... Բարեբաղդաբար այդ հրամանը ստացուեց այն ժամանակ, երբ Լերմոնտովը այլևս կենդանի չէր:

Եւ այնուամենայնիւ Լերմոնտովի փառքը աւելի ապրեց ու պիտի ապրի, քան «բարձրագոյն» իշխանութիւնը: Այդ իշխանութեան մասին ոչ իսկ յիշողութիւն է մնացել, մինչդեռ մեծ բանաստեղծ-ռազմիկի անունն ու գործերը կենդանի կը մնան յաւիտեան...»:

## ԳԱՒԱՌ

ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՏԱՐՐԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ԿԱՐԻՔԸ ՋԱՒԱԽՔՈՒՄ:—Ախալքալաքի Հ. ծխ. դպրոցում սովորում են մօտ 500 երկսեռ մանուկներ՝ մեծ մասամբ խեղճ ծնողների զաւակներ և շատերը գիւղացու որդիք: Դպրոցը երկդասեան է: Շատ անգամ ցանկութիւն և միտք է յայտնուել դասարանների թիւը բարձրացնել և միջնակարգ դպրոցի վերածել, բայց այդ միտքը չէ իրագործուել, միմիայն նիւթականի պատճառով: Ջաւախքին, իր 100,000 հայ բնակչութեամբ, իր բազմաթիւ հայաբնակ գիւղերով անհրաժեշտ և կարևոր է ունենալ միջնակարգ դպրոց: Սաները երբ աւարտում են երկդասեանը, ցանկանում են շարունակել իրանց ուսումը մեր թեմական դպրոցներում, բայց իրանց ծնողների նիւթական խեղճ դրութեան պատճառով չեն կարողանում իրագործել:

Գնալ ուսումը շարունակելու Ներսիսեանում և միւս թեմականներում—մեծամեծ ծախսերի հետ է կապուած: Եթէ գոնէ մեր դպրոցը հենց լինէր չորսդասարանեան, տեղացին իր որդին չի զրկի ուսումից և աւարտել կը տայ մինչև վերջը ծախսերը հոգալով:

Առաջարկում եմ հետևեալը. այդ դպրոցում կողք կողքի նըստած են քաղաքացու և գիւղացու զաւակները, ուստի ամենից առաջ, թէ քաղաքում և թէ գիւղերում, ըստ կարողութեան պարտադիր ուսման համար տուրք պիտի որոշել. այնուհետև գաւառի շատ թէ քիչ ունեւոր գիւղերի եկեղեցիներից նպաստ պիտի յատկացնել: Արդիւնքի աղբիւրներ շատ կան: Վիճակիս բազմաթիւ գիւղերի եկեղեցիները պատահական վաճառողներից են գնում եկեղեցում գործածելու մոմը. պէտք է Ախալքալաքում ունենալ վիճակի և քաղաքի համար մի մոմի պահեստ (մոմի վաճառանոց) և ստացուած արդիւնքը յատկացնել նոյն դպրոցին: Գալիս է սեպտեմբեր ամիսը, շատ ծնողներ ուղղակի իրանց զաւակների հետ լաց են լինում, որ կամ դպրոցում իրենց տղային տեղ չկայ ընդունելու, կամ երկդասեանը աւարտել է չի կարող այլ տեղ ուղարկել...

Սրսէն քահ. Բլրցեան

ԾՈՒՂՐՈՒՏ (Ախալցխայի գաւառ), 15 յուլիսի:—Յունիսի վերջերին տեղումս սկսուեց հունձը և այսօր համարեա վերջացած է: Չը նայած որ զգացւում էր աշխատաւոր ձեռքերի մեծ պակասութիւն, բայց գիւղացութիւնը երկիւղ կրելով, թէ մի գուցէ ուշացնելով չըկարողանան իր ժամանակին հունձը վերջացնել և վնասը կրկնակի չըլինի, իւրաքանչիւր ոք, պարտքփոխ անելով հրաւիրեցին հարևան մօտիկ գիւղերի թիւրքերին և իւրաքանչիւրին տալով օրավարձ 3—4 ռուբլի (անցեալ տարիներում 50—60 կոպ. էր), համարեա 15 օրում վերջացրին հունձը, որը նախկին տարիներից աւելի բերք է խոստանում, որով և գիւղացութիւնը շատ թէ քիչ ուրախ էր: Բայց այս վերջին օրերս երբ կարդացուեց Բարձրագոյն ուկազը, որով զէնքի են կանչւում կարմիր և կապոյտ տոմս ունեցողները, այդ բանը ժողովրդին գցեց մեծ սարսափի և անելանելի դրութեան մէջ: Ա-

ռանց բացառութեան 130 անից բաղկացած Ծուղրուտը մնալու է առանց աշխատաւոր ձեռքերի, թէ ցորենի կալսելը և թէ աշնան վար ու ցանը կը մնան կիսակատար, որը և սով կը սպառնայ ժողովրդին։ Ներկայ գինուորակոչից մեծապէս տուժելու է և գիւղական խղճուկ դպրոցը, որ կառավարւում էր Կ. Հ. Բ. Ը-թեան տուած նպաստով և աշակերտների վճարած ուսման վճարով. բայց ներկայ պայմաններում գիւղացութեան 80—90%-ը չի կարող այլես ուսման վարձ տալ. և եթէ չը լինի արտաքին կամ կողմնակի որևէ եկամուտ՝ ժամանակաւորապէս փակուելու է դպրոցը։

Եղիշէ քհյ Տէր Յակոբեանց

—

ՍՈՒԼՏԱ (Ախալք. գաւ.), 12 յուլիսի.—Կիրակի, յուլիսի 10-ին վիճակիս գործակալ Երուանդ վարդապետի ներկայութեամբ և նրա յորդորների շնորհիւ հասարակութիւնից ժողով կայացնելով, «Գոգալի-Ձոր» կոչուած մարգագետինը նուիրեց այս տարի եւ դպրոցի շինութեան օգտին։ Իսկոյն մարգագետնի խոտը վաճառեցին 500 ռուբլու և դրամը յանձնեցին դպրոցի շինարարական յանձնաժողովի նախագահին։

—Խոտահարքը սկսուեց. խոտը շատ սակաւ է. յուլիսի 1-ին Ախալքալաք հասան 88 որբ 3-ից 15 տարեկան Հայաստանցի երեխաներ. որբերին մեծ խնամք է տարւում։

Արսէն քահ. Բլրցեան

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը ստացել է շնորհակալութեամբ յօգուտ փախստականների՝

ՃԻԱԹՈՒՐԻՑ—Տիկին Քոչեանի ձեռքով հանգանակուած 5 ռուբլի դրամ և 40 կտոր հին շոր։

ՍԿՎԻՐԱՅԻՑ—Երգուեալ հաւատարմատար Սահակ Մելիք-եթբէկեանից 25 ռ.։

ԿՈՒԼՈՄԶԻՆՕ կայարանից (Սիբիրիայից) Այգեվարդ Դաւթեան Աբրահամեանից 25 ռ.։ Պարոնը խոստանում է իր նուիրաբերութիւնը ամսէ ամիս շարունակելու։

ՄԱՅԿՈՊԻ ՃԻՒՂԻՑ—240 ռ.։

ԹԻՖԼԻՍ— պ. Ս. Գ. Յարութիւնեանի միջոցաւ հանգ. Արշակ Զարգարեանի գագաղի վրայ պսակ դնելու փոխարէն յօգուտ փախստական որբերի 61 ռ., նուիրատուներն են՝ Ս. Յարութիւնեան 10 ռ., եղբ. Եարղուլեաններ 10 ռ., եղբ. Շարբաբչեաններ 10 ռ., Խ. Գ. Ճերմակեան 10 ռ., եղբ. Զիրուղչեաններ 5 ռ., եղբ. Փերղուլեաններ 5 ռ., Վ. Պ. Կորօղեվ 5 ռ., Ս. Գ. Բալիօզով 3 ռ. և Վ. Խ. Փերղուլեան 3 ռ.։

* * *

Մ. Աղայեանցը յայտնում է Հայ. Կենտր. Կոմիտէին, որ իր յօժարակամութեամբ լոյս տեսած Ղ. Աղայեանցի «Երկու-Քոյր» գրքի գնի 30% յատկացնում է Էջմիածնի որբանոցին։

Խնդրում է աջակցութիւն այդ գրքի տարածման համար։

### ՃԻՒՂԵՐ

ԿԱՂԶՈՒԱՆԻ ՃԻՒՂ.—Յուլիսի 3-ին կայացաւ ընդհանուր ժողով, ուր վարչութեան անդամներ ընտրուեցին հետևեալ անձինք.—Վռամշապուհ Վանեցեան, Մկրտիչ Ծաղիկեան, Տիգրան Ղանթարջեան, Արշակ Թումասեան և Մկրտիչ Շահնազարեան։

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Մ ո ւ շ—Կարա-Սասունից.

Մշոյ հովտի բերքն անյաջող է։ Փախստականների մեծ մասը ներկայումս ենթակայ է սովի։

Յայտնեցէք՝ ինչ դրութեան մէջ է ալիւրի փոխադրութիւնը։

Շտապեցէք ապրանքի փոխադրութիւնը։

—

Ա ր դ ա ն ո յ շ—Մինասեանից.

Այսօր հասայ Օքրոբակերտ. ուղարկած ալիւրը բաժանեցի, որը կը բաւականանայ միայն մի շաբաթ։ Անհրաժեշտ է օգնութիւն. կարիքը մեծ է։

Օկրոբակերտցիները և Սաթլեցիները Պետական նպաստ դեռ չեն ստացել։ Սովը սպառնում է երկու գիւղերին էլ։ Խնդրում ենք ուղարկէք շորեր, կօշիկներ և փող՝ ալիւր գնելու համար։

—

Ա լ է ք ս ա ն դ ր ա պ ո լ—Ղազարեանից.

Սարիղամիշի վրայով բերած 120 որբից 100-ը տեղաւորեցինք Ախալքալաքում, իսկ մնացեալը՝ Ալէքսանդրապոլի որբանոցներում։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Նորից բացուած են պահեստներ Ղամարլու գիւղում, Մուշում, Բայազէդում և Խնուսում։ Հետզհետէ պատրաստւում է սեփական փոխադրութիւն (транспортъ) 96 սայլից և 4 ֆուրգոնից բաղկացած, արագացնելու փոխադրութիւնը այն վայրերում, որտեղ ոչ միայն երկաթուղային յարաբերութիւն չկայ, այլ և դըժուար է վարձու սայլեր ձեռք բերել։

96 սայլից 70-ը յատկացուած է Վանի շրջանի համար, իսկ 26-ը՝ Ղարաքիլիսա-Խնուս գծում աշխատելու։ 4 ֆուրգոններից 2-ը աշխատելու են Էջմիածին—Իգդիր գծում, իսկ միւս 2-ը՝ Իգդիրից—Ղարաքիլիսա։ 36,000 ֆ. թէյից ստացուած է 1,150, որ ուղարկուած է Մեծ-Ղարաքիլիսա՝ 200 ֆ., Երևան՝ 200 ֆ., Ելենովկա՝ 50 ֆ., Գանձակ՝ 50 ֆ., Նոր-Բայազէդ՝ 50 ֆ., Սարիղամիշ՝ 50 ֆ., Ալէքսանդրապոլ՝ 50 ֆ., Դիլիջան՝ 50 ֆ., Վաղարշապատ՝ 200 ֆ., Իգդիր՝ 200 ֆ., և Քարվանսարա՝ 50 ֆ.։

Յուլիսի 2-ից մինչև 20-ը ստացուած է 10 վագոն ալիւր, որից Ալէքսանդրապոլ ուղարկուած է 1 վագոն, Իգդիր՝ 2, Վաղարշապատ՝ 2, Ղամարլու՝ 2, Երևան՝ 2, Նոր-Բայազէդ՝ 1 վագոն։ Իգդիրից Թապարիսի գծով ուղարկուած Վան 1 վագոն ալիւր և 200 փ. շաքար և Խնուս՝ 1 վագոն ալիւր և 100 փ. շաքար։

Ըստ ստացուած տեղեկութեանց Ղամարլու գիւղում տեղական առևտրականները ալիւրի պարկը (мѣшокъ) ծախում են 20—25 ռ., Ընկերութիւնն՝ 13—14 ռուբ., Վաղարշապատում Եղբայրական Օգնութիւնը՝ 15 ռ. առանց քաշի, առևտրականները՝ 18—20 ռ., Ընկերութիւնս 14 ռ. քաշով։ Իգդիրում Եղբայրական Օգնութիւնը ծախում է 20 ռ. առանց քաշի, առևտրականները՝ աւելի թանգ, Ընկերութիւնս՝ 14 ռ.։

## Ամենայն Հայոց Կաթող. Թիֆլիսում

Վարդավառի կիրակի օրը Թիֆլիսի Վանքի մայր տաճարում տօնուեց Վեհափառ Կաթողիկոսի գահակալութեան և օծման 5-րդ տարեդարձը։ Ատրպատականի թեմ. առաջնորդ Ներսէս եպիսկոպոսը պատարագիչ էր։ Երգում էր Դր. Միրզայեանի ղեկավարութեամբ, մասնակցութեամբ երգիչ Բ. Ամիրջանեանի և երգչուհի Ասլանեանի՝ դպիրների խումբը։ Տաճարը լի էր ազգային-կրթական-կուլտուրական հաստատութիւնների ներկայացուցիչներով։ Վեհարանը զարդարուած էին կանաչ գրասանդներով։

*Սինոդի անդամ Գէորգ վարդապետ Զէօրէքչեանը քարոզ խօսեց։*

*Գատարագից յետոյ կատարուեց հայրապետական հանդիսաւոր մաղթանք Նորին Սրբութեան ներկայութեամբ։*

*Յետոյ Վեհափառ Կաթողիկոսը, շրջապատուած հոգևորականութեամբ, բարձրացաւ վեհարան, ուր տանող ուղին ծածկուած էր կարմիր մահուդով։*

*Վեհափառը վեհարանում գահ բազմելով ընդունեց նախ հոգևորականութիւնը, քահանաները, կոյսերը, ապա ազգային կրթական-բարեգործական-կուլտուրական հաստատութիւնների ներկայացուցիչների կողմից բժշկապետ Բագրատ Նաւասարդեանը կարդաց ուղերձ։*

*Ահա այդ ուղերձը.*

*«Քո ժողովրդի աննախընթաց տառապանքի օրերում մեր աչքերը յառած են Հայոց Հայրապետութեան և որդեսէր Մեծ Հովուապետիդ վրայ։ Մեզ տիրող արտաքին ու ներքին խաւարի մէջ Հայրապետ ու Հայրապետութիւն մեր ուղին լուսաւորող պայծառ լապտերն է, մեր սրտերի քաջալերութիւնը, մեր վհատութեան փարատութիւն, յոյսը՝ մեր հոգիների։*

*«Այս ըմբռնումով ու ջինջ ոգևորութեամբ է, Մեծ Քահանայապետ, որ որդիական խորին ակնածութեամբ ժողովրդասէր Հօրդ ընդ առաջ եկան Թիֆլիսի հայոց ազգային հաստատութիւնները, որոնց երջանկացրիր Քո բարձր, շնորհաբեր այցելութեամբ։*

*«Կրկին երջանիկ ենք, որ Քո գահակալութեան հինգերորդ տարեդարձի հանդէսն այստեղ Թիֆլիսի հայութեան մէջ կատարելու պատեհութիւնն ունենք։*

*«Առ ոտս Վեհափառ Տեառնդ ենք արկանում մեր որդիական սրտագին շնորհաւորութիւնը, հայցելով Բարձրեալ Աստուծուց, որ Քեզ առողջ և երկար կեանք պարգևէ, որ զօրաւիգն լինի Քեզ Քո ծանր Խաչը առաքելական արիութեամբ դէպի բարոյական մեծ յաղթանակը տանելու Քո բազմաչարչար Եկեղեցու պայծառութեան և Քո բազմատանջ ժողովրդի փրկութեան ու վերակենդանութեան համար»։*

*Այս հանդէսից յետոյ Վեհի աջն առան բոլոր ներկայացուցիչները։ Շնորհաւորողներին մատուցուեց շոկոլադ, սուրճ, զովացուցիչ ըմպելիք և քաղցրեղէն։ Ապա տեղի ունեցաւ և հանդիսաւոր ճաշկերոյթ։*

*Նոյն օրը ժամի 3-ից 15 վայրկեան անց Վեհափառ Կաթողիկոսին այցելեց Ն. Կ. Բ. Փոխարքայի օգնական իշխան Օրլովը, որ մնաց Նորին Սրբութեան մօտ 50 վայրկեան և սուրճ ընդունեց։*

***

*Վ ե հ ա փ ա ռ  Կ ա թ ո ղ ի կ ո ս ը ամսիս 19-ին իւր շքախմբով տեղափոխուեց եղբարք Մանթաշեանների այգին, որ գտնուում է Նահանգական բանտի մօտ։*

## Ք ր ո ն ի կ ո ն

*Յուլիս 3—5 Թիֆլիսում տեղի ունեցող խանութների թալանի ժամանակ կողոպտուել կամ վնասուել են մօտ 43 մթերանոցներ ու խանութներ։ Ամենամեծ վնասը հասել է Եղ. Միլեաններին (500,000 ռ.)։ Ընդհանուր վնասը հաշուած է 1,200,000 ռուբլու։ Հաշուի չեն առնուած դեռ ևս 26 ուրիշ խանութներ, որոնք աւելի պակաս են վնասուած։*

*Այդ առթիւ պաշտօնապէս յայտարարուած է հետևեալ հաղորդագրութիւնը.—*

*Ներկայ յուլիսի 2-ին առաւօտեան Թիֆլիս քաղաքում կանանց և անչափահասների ամբոխը քաղաքի հեռաւոր փողոցներից մէկում թալանեց կանաչի ծախող մի սայլ պամիդորով, որ ծախում էր սակագնից աւելի։ Նոյն տեղում կանանց ամբոխը ուրիշների հետ, որ հաւաքուել էին ազմուկի ձչոցների վրայ, մօտեցաւ մօտակայքում գտնուող մանրավաճառանոցին և պահանջն… բանջարեղէնի վաճառումը այն գնից ցած, որ պահանջել էր ման… րավաճառը։ Խանութպանի և կանանց ամբոխի միջև տեղի ուն… ցած վէճի միջոցին հանդէս եկան ոստիկանական պաշտօնեանե… որոնք, լսելով յուզուած ամբոխի յայտարարութիւնը անհրաժեշ… մթերքների ծայրայեղ թանգութեան մասին, անմիջապէս միջոց… ներ ձեռք առան և իրանց անձնական ղեկավարութեան ներքո… սկսեցին զանազան ապրանքների վաճառումը սակագնով. բա… այնուհետև, ամբոխից մի քանիսի ցուցմունքով, սկսեցին երև… հանել առևտրականների պահեստներում թագցուած ապրանքները, որ տեղն ու տեղը ծախուեցին սակագնով։ Ոստիկանութեան այ… միջոցները հանգստացրին ամբոխին, որ խաղաղ ցրուեց։ Յուլիսի 3-ը և ամբողջ չորրորդ օրը անցան միանգամայն հանգիստ, որովհետև ոստիկանական պաշտօնեաները քաղաքի զանազան մասերում անձամբ հսկում էին առևտրականների վրայ, որպէսզի ապրանքները ծախուեն գոյութիւն ունեցող սակագնով։ Միայն յուլիսի 4-ի երեկոյեան կանանց ամբոխը Ձերքեզովսկայա փողոցում սկսեց ջարդել ճոթեղէնի մի փոքրիկ խանութ, բայց վրայ հասնող ոստիկանական պաշտօնեաները դադարեցրին այն և ամբոխը ցրուեց։*

*Յուլիսի 5-ի առաւօտեան կանանց մի խումբ սկսեց ջարդել Գորոժնովի ճոթեղէնի խանութի ցուցափեղկերը Միքայէլեան փողոցի վրայ և թալանել ապրանքը։ Շնորհիւ ամեն կողմից վրայ թափուող ժողովրդի, այդ խումբը յանկարծ փոխուեց մի հսկայական ամբոխի, որին անկարելի եղաւ անմիջապէս ցրուել ոստիկանութեան և զօրամասերի խիստ քիչ լինելու պատճառով, որոնք ցրուած էին քաղաքի զանազան մասերում հնարաւոր անկարգութիւններից նախազգուշացնելու համար, և ամբոխին աջողեց աւերել խանութները։*

*Նոյն այդ ժամանակ քաղաքի զանազան մասերում սկսուեց զանազան առևտրանոցների ջարդ։ Զօրամասերի և ոստիկանութեան օգնութեամբ քաղաքի շատ կէտերում ամբոխն անմիջապէս ցրուեց։ Խանութները կողոպտելու փորձերը շարունակուեցին ամբողջ օրը։ Գիշերը անցաւ խաղաղ։ Յուլիսի 6-ին, ցերեկով, շնորհիւ ձեռք առնուած եռանդուն միջոցների,—թէև մի քանի փորձեր էլ եղան ամբոխի կողմից խանութները կողոպտելու,—այդ փորձերը հենց սկզբում ընդհատուեցին զօրամասերի և ոստիկանութեան միջոցներով։ Ցերեկուայ ժամը 5-ին քաղաքում վերահաստատուեց կարգը։*

*Ջարդերից վնասուել են 43 առևտրատուն, որոնցից 19-ը աւել կամ պակաս նշանաւոր, իսկ մնացածները աննշան։ Կողոպտուածի մի մասը վերադարձուած է սեփականատէրերին։*

*Ջարդեր սարքողները և խանութներից ապրանք թալանողները բռնուել են և յանձնուել քննիչ իշխանութիւններին։*

*Նորին Կայսերական Բարձրութեան հրամանով Փոխարքայի խորհրդի անդամ Գրոտասեւին է յանձնուած քննել Թիֆլիս քաղաքում յուլիսի 5-ին և 6-ին կատարուած անկարգութիւնների և ոստիկանութեան այդ բանը ճնշելու համար ցոյց տուած գործունէութեան պատճառները։*

***

*Յուլիս 20-ից, Թիֆլիսում, Փոխարքայի օգնական իշխ. Օրլովի նախագահութեամբ սկսուեց Կովկասի նահանգապետների և շրջանապետների համագումարը։ Թիֆլիսի նահանգապետի խնդրի համաձայն՝ քաղաքային վարչութիւնը համագումարին է ներկայացնելու ապրանքների գները պատերազմից առաջ և այժմ։*

***

*Թիֆլիսի քաղաքային՝ վիրաւորների համար կազմուած կոմիտէտը, Կովկասի գլխաւոր կոմիտէտից առաջարկ է ստացել այսուհետև ծառայութեան չը կոչել այնպիսի անձերի, որոնք վաղ թէ ուշ պիտի զինուորագրուեն։*

***

Հայ փախստականներին յայտարարւում է Թիֆլիսի քաղաքային կեդր. կոմիտէից, որ Թիֆլիսում այլ ևս ոչ ոքի չի տրուելու պետական նպաստ։ Այն փախստականները, որոնք կամենում են ստանալ նպաստ, բնակարան, անկողին, ճերմակեղէն և զգեստ, պիտի գնան Լոռու գաւառի գերմանական նախկին գիւղը, Շուլաւէրի շրջակայքում։ Գնացողներին կը տրուի յատուկ վագոն և երկաթուղու կայարանից էլ մինչև գիւղը, որ 27 վերստ է, սայլեր։

***

Ամսիս 17-ին Ծիրանաւորի որբանոցում կայացաւ ուսուցիչների կազմակերպած դպրոցական գրական-երաժշտական հանդէս։

***

Քաղաքային սպանդանոցի ֆելդշեր պ. Գինչարովը հնարել է սանդալների մի ձև, որի տակը լինելու են կաշուի փոխարէն փայտ և գինը կըլինի շատ աժան։

***

Նահանգապետը հաստատել է քաղաքային դումայի այն որոշումը, որ վերաբերում է տրամուայի և քաղաքային ծառայողների ռոճիկները աւելացման որոշումը։

***

Վրաց մէջ գրագիտութիւն տարածող ընկերութեան վարչութիւնը թոյլտւութիւն է ստացել իր ճիւղերը բանալու Թիֆլիսում և սրա գաւառում, Խաշուրում, Զոխատաուրում է Օզուրգէթում։

***

Թիֆլիս են ժամանել ռուս ս. Սինոդի օբեր-պրոկուրոր Ա. Վոլժինը և հռոմէական կաթոլիկ եպիսկոպոս բարոն Ռոպ։ Թիֆլիսից՝ արձակուրդով մեկնել են՝ քաղաքագլուխ Ա. Խատիսեանը և Քաղ. Վարչ. անդամ Ժուրուլին։

***

Թիֆլիսում արդէն մտցուած է կօշկեղէնի սակագին, որ հաստատել է առևտրի և արդիւնաբերութեան մինիստրութիւնը։

***

Թիֆլիսի վաճառականների ժողովը որոշել է օգնութեան հասնել վերջին անկարգութիւններից վնասուած առևտրականներին։ Օգնութեան ձևի մասին խօսուելու է յետագայ ժողովում։

***

Տեղական հրէաների ռաբբին՝ Մ. Մարկուսը, վաճառական Մ. Մայզէլսոնը և ուրիշները դիմել են նահանգապետին, խնդրելով թոյլ տալ Թիֆլիսում հիմնել աղքատ հրէաներին օգնող ընկերութիւն «Ցդոկօ Լօյանիմ» անունով։

# Արտաքին տեսութիւն

## ԱՍՈՐԻՆԵՐԻ ՇԱՐԺՈՒՄԸ ԵՒ ՅԱՂԹՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԹԻՒՐՔԻԱՅՈՒՄ

Ասորի գաղթականները մտածում են իրենց հայրենիքը ազատել ու ապահովել աւազակ քիւրդերից և ահա, երբ երկիր են վերադառնում, խմբեր են կազմում, զինւում և յաջողութեամբ գործադրում մաքրելու գործը։

Առաջին այդ ձեռնարկի յաջող ելքի մասին «Հորիզոնի» թղթակիցը ահա թէ ինչ շահագրգիռ տեղեկութիւն է հաղորդում Սալմաստից, յունիսի 25-ին։

Քիւրդիստանում, Ջուլամերիկից դէպի հարաւ, տարածւում է Փինիանիշ գաւառակը Զալ կենտրոնավայրով։ Երկրի մակերեւոյթը լեռնային է և ամբողջովին քրդերով բնակուած։ Աշիրաթապետն է Սադի աղան, որ նստում է Զալում և ունի, ինչպէս ասում են, 3,000-ի չափ տղամարդ իր իշխանութեան ներքոյ, որոնցից 700—800 լաւ զինուած։

Երբ վերջերումս ռուս կառավարութեան կողմից յայտարարւում է, որ գաղթականները պէտք է վերադառնան, ասորի գաղթականները մտածում են նախ և առաջ գնալ և իրենց հայրենիքը՝ Ջուլամերիկի շրջանը՝ ապահովել շրջակայ քրդերից։

Դիմում են պատշաճ իշխանութեան և թոյլտւութիւն խնդրում այդ դժուարին գործը գլուխ բերելու, իրենց սեփական միջոցներով, սեփական ուժերով։ Թոյլատրւում է։ Ահա սրանից մօտ մի ամիս առաջ, ասորիների մի մեծ խումբ, շուրջ 1,500 հոգուց բաղկացած, որոնցից 5—600 հոգի զինուած, շարժւում է դէպի Փինիանիշ, Սայիդ աղայի և իր ցեղի վրայ։

Առաջին կռիւը տեղի է ունենում Զալում։ Ասորիները նախօրօք կազմուած ծրագրի համաձայն, պաշարում են Զալը, թողնելով միայն մի ճանապարհ պաշարուածների փախուստի համար, որպէս զի կարողանան փախչողներին հարուածել։ Սկսւում է կռիւը։ Երկուստեք կռւում են մեծ քաջութեամբ։ Վրէժխնդրութեան կրակով այրուած ասորիները յաղթանակում են. քրդերը թողնում են Զալը և փախչում անհամար կորուստ տալով։

Քրդերը չեն յուսահատւում։ Զալի անկումից յետոյ նրանք ոյժ են հաւաքում՝ երկրորդ կռւում յաղթանակը տանելու համար։ Բայց այս անգամ էլ բախտը դաւաճանում է նրանց և նրանք պարտւում են։ Թողնում են տուն, ինչք, հարստութիւն, ստացուածք և խուճապով դէպի Ամիդիայի կազան փախչում, որ գտնւում է Փինիանիշից հարաւ-արևմուտք, Մոսուլի վիլայէթում։

Ասորիները խլում են նրանց ունեցուածքը և կենդանիները։ Մտնում են տները, վերցնում արժէքաւոր իրերը և յետոյ տներն ու գիւղերը այրում։ Մտնում են նաև Սադի աղայի տունը։ Այդտեղ գտնում են մի թանկարժէք յաղթութեան աւար («տրոֆէյ»)։ Այդ այն կեռ թուրն է, որ ժառանգաբար Սադի աղային է հասել, որպէս բէգութեան զինանշան։ Գտնում են նաև մի ռուս սպայական թուր, որ բերելով իրենց հետ յանձնում են Քոլանէսի ռուս կոմենդանտին։

Սադի աղայի այդ նշանաւոր թուրը բերում են և մատուցանում Մար-Շիմոնին։ Մենք երէկ, մեր աչքով տեսանք այն։ Մեծ կեռ թուր է, եաթաղանի նման, արծաթեայ պատեանով և ոսկեհայ-արծթազօծ երախակալով։ Ով գիտէ, որքան անմեղ արիւն է թափուած այդ դժոխային գործիքով։ Մինչև այժմ էլ չորացած արիւնը դեռ մնում է թրի վրայ, որպէս ապացոյց նրա տիրոջ բարբարոսական գործերի։

Ասորիները իրենց հետ բերում են նաև 1000-ից աւելի ոչխար, եղջերաւոր անասուններ և այլ կենդանիներ։ Բերում են նաև կաղակի 4 ձի, որ հանում են Սադի աղայի գոմերից, որոնց սակայն թողնում են ճանապարհին։ Ոչխարներն ու եղջերաւոր կենդանիները հասցնում են մինչև Բաշկալա, որտեղ կոմենդանտը գրաւում է այդ բոլորը։

## ԼՈՒՐԵՐ

Ռէյտէրի գործակալութիւնը հեռագրում է, որ Անգլիական կառավարութիւնը իր մահմեդական գաղութների մէջ յայտարարել է հետևեալ կոչը.

«Բազում տարիների ընթացքում արաբները տանջուելով թիւրքաց կառավարութեան գործողութիւններից՝ մեծ յոյս ունէին, թէ կը գայ այն օրը, երբ նրանք կարող կը լինեն նորից ձեռք բերել իրանց նախկին ազատութիւնը։ Այդ պատճառով անցեալում տեղի ունեցան շատ ապստամբութիւններ Արաբիայում թիւրքական տիրապետութեան դէմ։

«Ներկայ սահմանադրական կառավարութեան ոճիրները և նրա լիակատար հպատակութիւնը գերմանական ազդեցութեան՝ ստիպեցին Թիւրքիային նետուել կործանարար պատերազմի գիրկը։ Այդ հանգամանքը առաջ բերեց տագնապ։ Մէքքայի մեծ շէրիֆը և

*Արաբիայի միացած պարագլուխները վճռեցին, թէ հասել է արդէն այն րոպէն, երբ կարելի է թօթափել թիւրքական բռնի լուծը և հաստատել արաբացոց անկախութիւնը։*

*«Անգլիան միշտ բարեացակամ է եղել դէպի արաբները։ Իսկ առաջներում նրա աւանդական բարեկամութիւնը Թիւրքիայի հետ հարկադրում էր նրան ձեռնպահ մնալ վերոյիշեալ շարժումից. սակայն ներկայումս Թիւրքիան, կապելով իր վիճակը կենտրոնական մեծ պետութիւնների վիճակի հետ, թողել է Անգլիային գործել ազատ և իրականում ապացուցանել իր բարեացակամութիւնը դէպի արաբները, որոնք կանգնել են դաշնակից ազգերի կողմը ընդհանուր թշնամու դէմ։ Անգլիական կառավարութեան մշտական քաղաքականութիւնը՝ չը միջամտել կրօնական հարցերի մէջ, բայց և միևնոյն ժամանակ չը խնայել ոչ մի ջանք իսլամի սրբազան վայրերը պաշտպանելու դրսի ամեն միջամտութեան դէմ՝ հանդիսանում է բրիտանական քաղաքականութեան անխուսափելի սկզբունքը։ Այդ սրբավայրերը պէտք է մնան անկախ մահմեդականների կառավարութեան ու իշխանութեան ներքոյ։*

*«Ռազմական գործողութիւնները մեծ դժուարութիւններ ու վտանգներ առաջ բերին նրանց համար, որոնք կամենում էին ուխտագնացութեան գալ սրբավայրերին, բայց Մէքքայի մեծ շէրիֆի գործողութիւնները հիմք են տալիս յուսալու, որ կարելի կը լինի ձեռք առնել այնպիսի միջոցներ, որոնց ոյժով ուխտագնացները կարող են հնար ստանալ խաղաղ ու անվտանգ այցելել այդ սրբավայրերը»։*

—

*Ռումինիայում տեղի են ունենում շարժումներ։ Թագաւորը որոշել է թագաւորական խորհուրդ գումարել։ «Ա տ է ւ է ր ո ւ լ» թերթը յայտարարում է, որ Ռումինիան շուտով կը դաշնակցի Ռուսիային։*

*Բեռլինում արդէն յուզումն է տիրում. գերմանական թերթերը սկսել են սպառնալ Ռումինիայի թագաւորին։ Էլեմտից նախարարը առաջարկել է բանկերին, որ այլևս դադարեցնեն իրենց գործունէութիւնները Թիւրքիայի, Աւստրիայի և Գերմանիայի հետ։*

—

*Բուխարեստից հեռագրում են, որ նորընտիր մեծ շէրիֆը, որին նշանակել է Սուլթանը և իբր հակաթոռ ուղարկել Արաբիա—հասել է Դամասկոս, ուր կառավարութեան ստիպմամբ, ազգաբնակութիւնը հանդիսաւոր ընդունելութիւն է ցոյց տուել։ Սակայն դժուար թէ նոր «շէրիֆը» կարողանայ շարունակել իր ճանապարհը դէպի Մէքքա, իսկ այդտեղ չը գնալով նա չի համարուիլ շէրիֆ։ Դժուար թէ արաբները թոյլ տան այդ հակաթոռին՝ մօտենալու սրբազան վայրերին։*

—

*Ֆրանսական «Հ ի ւ մ ա ն ի թ է» թերթի թղթակիցը Զուիցերիայից գրում է, իբր թէ գերմանացոց կառավարութեան ներկայացուցիչը մամուլի ներկայացուցիչներին այսպիսի խօսքեր է ասել.*

*Իմ հաղորդագրութիւնները շատ գաղտնի բնոյթ ունեն և խնդրում եմ ամենախիստ լռութիւն պահպանել ասելիքներիս մասին։ Դուք գիտէք Վերդենի ամբողջ դրութիւնը, որ բոլորովին վատ չէ. բայց պէտք է խոստովանուել, որ այդ չի գոհացնում մեզ և թէ ստացուած արդիւնքները չեն համապատասխանում մեր սկզբնական յոյսերին։ Մենք յոյս ունէինք բերդաքաղաքը գրաւել երեք շաբթում, առ առաւելն։ Սակայն անհամբեր չպէտք է լինել, պարոններ։ Կարող էք վստահ լինել գործողութիւնների բարեյաջող վախճանի մասին, թէպէտ ամեն ինչ դանդաղ է ընթանում։ Այլ եւ Վ ե ր դ ե ն ը չ է մ ե ր ճ ի գ ե ր ի գ լ խ ա ւ ո ր ն պ ա տ ա կ ը։ Ընդհանուր սպայակոյտը փոխել է իր ծրագիրը և մի ն ո ր ն է մ շ ա կ ե լ։ Բայց շարունակում ենք կռուել Վերդենի տակ, որպէս զի ֆրանսացիներին ստիպենք այնտեղ հաւաքել ըստ կարելւոյն շատ մարդ և թնդանօթաձիգներ։ Եւ երբ բանակի պետը յարմար վայրկեանը եկած կը համարի, մենք կը փորձենք կ ը ր կ ն ե լ Ս ե դ ա ն ի հ ա ր ո ւ ա ծ ը, այսինքն՝ պաշարել և գերել ֆրանսացոց բանակը։ Այս ծրագիրը, որ ժամանակ ու տոկունութիւն է պահանջում, գործադրելի է մեզ համար, քանի որ գիտենք, թէ ա ն գ լ ի ա ց ի ք վ ճ ռ ե լ ե ն ո չ ի ն չ չ ա ն ե լ և ը ս տ կ ա ր ե լ ւ ո յ ն խ ն ա յ ե լ ի ր ե ն ց մ ա ր դ կ ա ն ց այն նպատակով, որ հաշտութեան բանակցութիւնների ժամանակ իրենց ամբողջական ոյժերի տէրը մնան»։*

*Գժտութիւններ սերմանող բառեր... այնքան խորհրդաւորապէս, «շատ գաղտնի բնոյթ կրող» քօղի տակ ասուած, աւելի «հաւատալի» դարձնելու դիտաւորութեամբ։*

—

*Արաբական ապստամբութիւնը զօրեղանում է։ Շէրիֆի արշաւող զօրքը, որ առաջ է գնում Հիջազի ափերով, տիրել է, Ջէդդայից յետոյ նաև Եամբօ ամրութիւնն ու քաղաքը։ Բերդապահ թիւրք զօրքը անձնատուր է եղել։ Արաբները ձեռք են ձգել մեծ քանակութեամբ թնդանօթ և ռազմամթերք։*

—

*Սերբիական զօրքը, նորից կազմակերպուած և ուժեղացած՝ յարձակուել է բուլղարների վրայ, ջարդել նրանց և դուրս քշել Սերբիոյ բարձունքներից։*

*Չերնոգորիայում նոյնպէս ապստամբուած սև-լեռնցիք զօրեղանում են և պարտիզանական կռիւներ սկսում։*

—

*Թերթերը հաղորդում են, որ անցեալ շաբաթ դաշնակիցների ջրա-սաւառնակները Կ. Պոլսի պատերազմական ամրութիւնների վրայ ռումբեր են նետել։*

—

*Թէհրանի շուրջը բանակել է պարսկական նոր զօրքը, բաղկացած 12,000 անձից։ Շարունակւում է բանակը ստուարացնելու գործը։*

—

*Անգլիոյ նախարարապետ Ասկուիտը՝ համայնքների պալատում յայտարարել է, որ դաշնակից պետութեան կառավարութիւնները վճռել են եղեռնագործ պատասխանատու համարել նաւապետ Ֆրայտի սպանողներին։*

*Պատերազմի ընթացքում այս երկրորդ դէպքն է, որ դաշնակից պետութիւնները եղեռնական պատասխանատուութեան են ենթարկում թշնամի պետութեան մէջ այնպիսի անձերի, որքան և բարձրաստիճան լինէին նրանք, որոնք իբր մարդասպան թափել են անմեղ մարդկանց արիւնը։ Առաջին դէպքը տեղի է ունեցել հայոց խմբական կոտորածի յանցաւորների վերաբերութեամբ։ Պատասխանատու են ճանաչուած թիւրք կառավարութիւնը՝ իր վայրենաբարոյ գործակալներով։ Այժմ ահա պատասխանատու է յայտարարւում գերման կառավարութիւնն եւ, որի գլուխն է, իհարկէ, կայզրը։*

—

*Ստոքհոլմից ստացուած լուրերի համաձայն, թիւրք սպաներ են ուղարկուել Գալիցիայի ճակատը, որոնք հասել են արդէն Լւով։ Թիւրք զօրքի փոխադրութիւնը դէպի աւստրիական և գերմանական ռազմաճակատը՝ կատարւում է մեծ չափերով։*

—

*Կ. Պոլսից տեղեկութիւններ են ստացուած, որ Թիւրքիայում արդէն սկսել են յուզումները գերմանացիների դէմ։ Նոյն իսկ երիտասարդ թիւրքերի կուսակցութիւնը բաժանուել է երկու մասի։ Գերմանասէրներին գլուխ է կանգնած Էնւեր փաշան, իսկ ընդդիմադիրներին ղեկավարում է Թալաաթ բէյը, որն Էնւեր փաշային մեղադրում է Թիւրքիայի մօտալուտ անկման համար։ Ենթադրւում է, որ Թալաաթը կը հռչակուի դիկտատոր (բացարձակ հրամանատար)։*

—

Նիւ-Եօրքին մօտ մի կղզեակի վրայ գտնուող ռազմամթերքի և դինամիտների մթերանոցի մի սոսկալի պայթումն է տեղի ունեցել, որ մեծ վնասներ և զոհեր է հասցրել։ Նիւթական վնասը հաշւում են մօտ 4—5 միլիոն ռուբլի։ Քննութիւնները երեւան են հանել գերմանական դաւադրութեան հետքեր։ Ձերբակալուած են մի քանի շոգենաւերի տէրերը։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԹՈՒՐՔԱԿԱՆ «ՍՊԻՏԱԿ ԳԻՐՔԸ» ԻՐԵՆՑ ՍԵՒ ԳՈՐԾԵՐԻ ՄԱՍԻՆ *)

II

Մեծ սխալ կը լինէր սակայն մտածել, թէ թիւրք կառավարութիւնը պիտի ձեռքը դնէր «վկայաթղթերի» վրայ և ապացուցանէր որ «առանձնաշնորհուած հայ տարրը» ապերախտ է գտնուել թիւրքերի դէմ։

Թուելով «Ս պ ի տ ա կ Գ ր ք ի» մէջ հայերի գործած «անիրաւութիւնները» թիւրք տարրի դէմ, այդ «անվստահելի ցեղի» սև «դաւաճանութիւնը» իրեն բարերարող թիւրք կառավարութեան վերաբերութեամբ,— Թալաաթն ու Էնւերը յայտարարում են, որ չը նայելով այդ ամենին՝ «Թիւրք կառավարութիւնը միշտ ներողամիտ է եղել և որև է ճնշիչ միջոցների չի դիմել հայերի վերաբերութեամբ մինչև այն օրերը, երբ 1915 ապրիլի կէսերին Վանում բացարձակ ապստամբութեան դիմեցին»։

Դուրս է գալիս, որ թիւրք կառավարութիւնը հայերին կոտորել է սկսել միայն Վանի ապստամբութիւնից յետոյ և այդ ապստամբութեան պատճառով։

Այդպէս է նա պնդում։ Միայն Վանի ապստամբութեան դէպքն է առիթ տուել ուրեմն ճնշիչ միջոցներ ձեռք առնելու՝ ամբողջ հայ ազգի վերաբերութեամբ։ Եւ այդ «ճնշիչ միջոցները» եղել են՝ գիւղերն ու քաղաքները դատարկել հայերից, հաւաքել տալ նրանց որոշ վայրեր ու կոտորել խմբովին, ծովափնեայ տեղերում ծովը թափել, գետերի մօտ—գետը, հարիւրներով ու հազարներով հրացանազարկ անել, մորթոտել, այրել, երեխաների՝ տոպրակների մէջ ածել և ծովը նետել, գիւղերը հիմնայատակ, տները՝ աւերակ, ունեցածները թալանի բաժին դարձնել, երկրի բոլոր աւազակ տարրերին զինել ու ոտքի հանել, հազարներով քշել դէպի անապատներն ու սովից կոտորել... Որովհետև Վանը ապստամբուեց և չը կամեցաւ ինքն էլ ենթարկուել անմռունչ կոտորածի, աքսորի և կողոպուտի...

Արդարացումն է այս, թէ՞ խակապէս մարդու քթին խնդալ և կամ առնուազն, «Ս պ ի տ ա կ Գ ի ր ք ը» կարդացողներին երեխաներ համարել։

«Ս պ ի տ ա կ Գ ի ր ք ը» սակայն չի ընդունում, որ Օսմանեան կառավարութիւնը «կոտորել է տուել» հայերին։ Ոչ, պարզապէս և «խոհեմաբար» նա ամբողջ երկրից, «օտար միջամտութիւնից ազատ պահելու համար հայ անբարեյոյս տարրը», տեղափոխել է «աւելի ապահով վայրեր»։ Իսկ թէ այդ տեղափոխութեան ժամանակ տեղի են ունեցել «ցաւալի դէպքեր և բռնութիւններ»—այդ անխուսափելի լինելով հանդերձ, չի վրիպել Օսմանեան կառավարութեան ուշադրութիւնից և նա շտապել է միջոցներ ձեռք առնել։

«Որքան և ցաւալի լինէին այդ փաստերը,—ասում է գիրքը—դրանք սակայն անխուսափելի հետեւանքներն էին մահմեդական տարրի՝ դէպի հայ տարրը ունեցած զայրոյթին։ Հայ տարրը միշտ ջանացել է ապստամբութիւններով և դաւաճանութիւններով վտանգի ենթարկել այն պետութեան գոյութիւնը, որի հպատակն է եղել»...

«Եւ այնուամենայնիւ—շարունակում է գիրքը—օսմ. կառավարութիւնը անխուսափելի համարելով հանդերձ տեղի ունեցող ցաւալի դէպքերը, արդարամտութեամբ դատի է ենթարկել և դատի է ենթարկելու այն բոլոր զեղծարարներին, որոնք մեղադրւում են հայերին նեղելու համար»։ Այդպէս՝ 53 մարդ դատի են տրուած՝ «բռնութիւններ և չարիք» գործած լինելուն համար հայերին տեղափոխելիս։ 56 հոգի պատժուած են՝ 1 ամիս բանտարկութիւնից մինչև 3 տարի տաժանակիր աշխատանքի։ Բացի այդ՝ 46 սպայ և զինուոր պիտի պատերազմական ատեան հանուեն, 36 հոգի էլ պիտի դատի կոչուեն։

Դրանցից 4 հոգի դատուելու են... գողութեան համար!...

Ահա թէ Օսմ. կառավարութիւնը ինչպէ՜ս գիտէ «արդարամիտ» լինել։ Էլ ի՞նչ էք ուզում։ 500,000 հայ կոտորելու համար դատի են կանչուած 109 մասնաւոր անձ, 46 զինուորական, իսկ 4 հոգի էլ... գողութեան մեղադրանքով։

Գրքի վերջում Օսմ. կառավարութիւնը մի անգամ ևս շեշտում է Վանի ապստամբութիւնը և յայտնում է, որ այդ ապստամբութիւնն է ստիպել նրան խիստ միջոցների դիմելու։ Այստեղ նա հերքում է այն կարծիքը, որ Կառավարութիւնը իբր թէ «հետեւում է յատուկ մի քաղաքականութեան՝ ներշնչուած ներկայ հանգամանքներից»։ «Սուտ, մտացածին է այն ենթադրութիւնը, որի համաձայն իբր թէ երիտասարդ թիւրքերը որոշել են հայ տարրը ոչնչացնել և առհասարակ իսլամ տարրի մոլեռանդութիւնը գրգռել պետութեան բոլոր քրիստոնեաների դէմ»։

«Հայերի թշուառութիւնը—ասում է գիրքը—արդիւնքն է իրենց (հայերի) այն յամառ հետապնդմանը, որ երազում է ստեղծելու անկախ Հայաստան»։ «Եւ—վերջացնում է գիրքը—միմիայն իրենց ազգային իդէալների այդ անուրջների պատճառով էր, որ դժբաղդ հայերն ընկան ներկայ հսկայական կռուի ոտքերի տակ»...

Ողբում են «դժբաղդ» հայերին Էնւերն ու Թալաաթը։ Այն «դժբաղդ»-ներին, որոնց կոտորեցին և դեռ կոտորում են զզուելի կեղծութեամբ շպարուած չարախինդ ժպիտը երեսներին։

«Թիւրք բռնակալութիւնը—ասում է Թղթակից Նիկոլայեը—երբէք այնքան պարզ երեւան չի եկել իր զարշելի մերկութեամբը, ինչպէս այժմ, երբ Էնւերն ու Թալաաթը այդպէս անամօթաբար ծաղրում են այն ազգի թշուառութիւնը, որի մեծ մասը նրանք խեղդեցին արիւնի և արցունքի մէջ»...

Վ. Փ.

*) Տես «Համբաւաբեր» № 29։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐԻ ՎԻՃԱԿԸ

## ԹՈՒՐՔ ՍՊԱՅԻ ՎԿԱՅՈՒԹԵԱՄԲ

Կարինից «Ա ր և» թերթի թղթակիցը հաղորդում է հետեւեալ կարևոր տեղեկութիւնները.—

Վերջին օրերս պատերազմի բեմից բերուած թիւրք գերիների մէջ կային 4—5 սպայ, որոնցից մէկը իրազեկ լինելով Տաճկա-

տանում կատարուած հայկական ողբերգութեան՝ մանրամասնօրէն պատմում է հետեւեալը՝

«Պոլսից մեծ թւով հայ վաճառականներ աքսորուած են Տաճկաստանի խորքերը։ Շատ գրագէտներ և ուսուցիչներ,—որոնց թւում նաև Դանիէլ Վարուժան, Սիամանթօ, դոկտոր Ռուբէն Զիլինգարեան, սպանուած են Կոնիայի շրջանում, իսկ Բիւզանդ Քէչեան և Կոմիտաս վարդապետ վերադարձած են կրկին Պոլիս՝ թիւրք կառավարութեան հրամանով։

Իզմիրի շրջանում ողջ հայութիւնը կենդանի է և տեղահան չի եղել մինչև այսօր և մնում են իրենց տներում։

Պարտիզակի, Ադաբազարի և Պրուսիայի հայերը ամբողջապէս քշել են Կոնիայի շրջանը, թէ տղամարդիկ և թէ ընտանիքները։

Թարսուս (Կիլիկիա) քիչ հայեր են մնացած, սրանք էս երբեմն-երբեմն ենթարկուել են հալածանքի, որի պատճառով փախել են։

Մարաշում եղած 25 հազար հայից մնացել են Մխիթարեաններ, որոնց թէպէտ ինչպէս միւսներին հալածել են, բայց վերջը ինչ բանից թելադրուած չեն հալածել և ներկայիս ողջ են։ Միմիայն աչքի ընկնող մի քանի Մխիթարեաններ աքսորուած են։ Թէև սկզբի օրերում հայերին աքսորել են, բայց և այնպէս նորից մնացողներ են եղել և դրանց էլ մօտ օրերս պիտի աքսորեն Հալէպ-Դէրզորի շրջանը։

Կեսարիայում 500 տուն հայեր մահմեդականութիւն ընդունելով դեռ այժմ էլ մնացել են իրենց տեղերը, իսկ այս շրջանում հայ զինուորների ընտանիքները ամբողջովին, սարսափելի տանջանքների տակ՝ կրօնափոխ են արել և ապա աքսորել մօտակայ թիւրքական գիւղերը։

Կրշէհրում եղած հայութեան 12 տարեկանից սկսած աքսորել են, և կանանց, ջահէլ հարսներին ու աղջիկներին պահել են։ Տղամարդկանց ճրտեղ են ուղարկել—անյայտ է մնացել իրենց ընտանիքներին անգամ։ Այդպէս է եղել հրամանը տեղի գայմագամի։

Աքսորել են Խարբերդ հետևեալ անձերին.—Պատուելի Վարդան, Արսէն, Սոկրատ, Պարունակ, ուսուցիչ Խաչատրեան, (որը ուսանել է Գերմանիայում) և բժիշկ Գաբրիէլ էֆենդիին, Որբեսէրեան, սրանք են եղել աչքի ընկնող հասարակական դէմքերը, որոնց խոկոյն և եթ էտապով ուղարկել են Բիթլիսից։

Խարբերդում նոյնպէս եղել են Տրապիզոնցի հայ կանայք, թւով 20 հոգի և 300-ի չափ մանկահասակ երեխաներ, որոնց բռնի կերպով ընդունել են տալ մահմեդականութիւնը, ըստ իրենց օրէնքի թլփատել ու բաժանել թիւրք ժողովրդի արտօնեալ դասակարգի մէջ։

Պոլսի հայութիւնը ներկայիս աղքատ վիճակում է գտնւում։ Թիւրք զօրքի օգտին վերցրել են գրեթէ ամբողջ հարստութիւնը։

Զքաւոր է նաև տեղական թիւրք ժողովուրդը, որովհետև այս պատերազմի պատճառով տարել են նրա ունեցածի մեծ մասը։

Աննկարագրելի դժգոհութիւն կայ թիւրք ժողովրդի մէջ։ Բացարձակօրէն անիծում են էնւէրին ու իր կուսակցութեան, որ երկիրը հասցրել են ծայր չքաւորութեան ու կորստի։

---

## ՄՈՒՇԻ ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԸ

Հ. Կ. Կոմիտէի կողմից Մշոյ շրջանն ուղարկուած լիազօրը հաղորդում է հետեւեալ տեղեկութիւնները.

Ուրախ ենք որ երկուք ու կէս ամիս է ինչ ժողովուրդը ապրում է իր վայրում. կազմուրուած է և կարող է դիմադրաել դժուարութիւններին, մանաւանդ որ եղանակները բարւոք են այժմ։

Ընդհանուր գաղթականութեան քաղաքում և դաշտում դասաւորելուց և նրանց սննդի անմիջական օգնութիւն հասցնելուց յետոյ՝ մեր գլխաւոր գործն է լինում անմիջապէս որբեր հաւաքել և անտէր կանանց ու թոյլերին դէպի Խնուս փոխադրել, որոնց թիւը ժամանակի ընթացքում հասաւ 1000-ի։

Ժողովրդի մի մասը տեղաւորելով դաշտում պարապեցին առաջ թոյլ, յետոյ բաւական ուժեղ՝ հացահատիկների հաւաքմամբ։ Այնպէս որ նրանք հնարաւորութիւն ունեցան թէ մեզ և թէ զինուորական իշխանութեան մատակարարել ցորեն և ստանալ բաւական դրամ։ Շնորհիւ դաշտում բնակուող ժողովրդեան՝ քաղաքում ապրող գաղթականութիւնը ևս կարողացաւ իրեն բաւական պարէն հաւաքել կամ մեր անմիջական առաջնորդութեամբ և կամ մեր տուած զանազան հնարաւորութեամբ։

Ապրիլի սկիզբներին Մշում մնում էին Սոյիւզի և Եղբայրական Օգնութեան կողմից մի-մի ներկայացուցիչ։ Մեր հասնելուն պէս ապրիլի 4-ին երկուքով մեկնեցին Բալուից։

Ապրիլի 10-ին եկաւ մեզ միանալու Համայեակ Մակարեանը, որով մեր խումբը բաղկացաւ երեք ընկերներից։

Խումբը՝ հակառակ սահղծուած վախի ու փախի, սկսեց իր գործը հիմնաւորապէս և մնայուն։ Գաղթականութեան համար ցորեն հաւաքող երեք ընկերներս էլ մեկնեցինք այլ և այլ վայրեր։ Մեր աշխատանքները արդիւնաւոր վերկացան. բաւական մեծ քանակութեամբ ցորեն և գէգլ ամբարեցինք, աւելի քան ներում էր մեր բիւջէն։

Ցորեն և գէգլ գտնւում էին կենտրոնից միշտ 30—40—50 վերստ հեռու, ուստի և սայլերի անհրաժեշտութիւն կար, որի մասին հեռագրուել է ձեզ ժամանակին։ Երբեմն վարձով և վերջը մեր եզները սայլեր լծելով կենտրոնացրինք մեր դրամական միջոցներով 4,508 պուդ ցորեն և 1,755 պ. գէգլ։ Ամբարից նորեկներն ստացել են անմիջապէս ալիւր, այլև ամբողջ շրջաններ, որոնք պարէնից զուրկ էին։ 5,300 հոգու բաժանել ենք 4,038 պուդ ցորեն. 200 մեր որբանոցին ապրիլի մէկից մինչև հիմա, 70 պուդ Քաղաքային Միութեան հիւանդանոցին և Մոսկուայի Հայկական Կոմիտէի Մուշի գործակատարին։ Այժմ ամբարումը կայ 200 պուդ միայն։ Գէգլ բաժանել ենք մինչև հիմա 489 պուդ և դեռ ամբարում ունենք 1,300 պուդ։

Ցորենը առաջ հնարաւոր էր մէկ ռուլով գտնել, յետոյ բարձրացաւ 2 ռուբլու և դժուար էր ճարւում. իսկ այժմ արդէն 4—5 ռ. արժէ և չի էլ գտնւում։

Դաշտի ժողովրդի 90 տոկոսը մինչև հունձքերը կարող է ապրել իր միջոցներով։ Քաղաքում բնակուողների 30 տոկոսը միայն կարող է հասնել մինչև հունձքը, իսկ 70 տոկոսը ենթակայ է սովի և մենք վերջերս դժբախտաբար շատ քիչ հնար ունենք դրանց օգնելու։ Անմիջական օգնութեան կարիք ունին մօտ 4,000 շունչ։

—Որբանոցը սկզբի օրից իսկ գոյութիւն է ունեցել, ի հարկէ այնքան լաւ որքան ներել են մեր ունեցած միջոցները և տեղի պայմանները։ Միշտ 40 որբ ունեցել ենք, իսկ մեկնած օրերին հասել է թիւը 100—150-ի։ Մենք միշտ զբաղուած լինելով շրջանի կազմակերպութեան գործով՝ հնար չենք ունեցել մեր որբանոցի որբերը մեր միջոցներով փոխադրել։ Մեր որբանոցից և մեր աջակցութեամբ փոխադրուել է 40 որբ Մոսկուայի կոմիտէի միջոցով մի անգամ. երկրորդ անգամ 130 որբ Սոյիւզի Մշոյ խմբի միջոցներով և մեր աջակցութեամբ, իսկ երրորդ անգամ կրկին մեր որբանոցից 164 որբ Սոյիւզի և Մոսկուայի կոմիտէի միջոցով։ Եւ մեր ներկայացուցիչների առաջնորդութեամբ տեղափոխում ենք այս անգամ 103 որբ ուղղակի Կովկաս կոմիտէի որբանոցները։ Որով մեր որբանոցից 437 որբ դուրս են եկել մինչև օրս. և տակաւին ունենք 30 որբ, բայց օր-օրին աւելանում են։ Որբերը ստանում են թէյ, ճաշ, և միշտ առատ և տանուլ լաւ հաց։ Այս վերջերը նոր շորեր ենք հագցնում և մաքրութեան գործը լաւ տանում։

Ապրիլի 20-ին մենք կազմեցինք մի ընդհանուր վիճակա-

Նոյն թերթի թղթակիցը Բաղէշից գրում է, որ «ողբալի պատկեր է ներկայացնում Բաղէշը իր ներկայ դրութեամբ։ Դժբաղդաբար դեռ մինչև օրս էլ (յուլիս 3) չեն հաւաքուած հայերի դիակները։ Ամեն մի անկիւն, ամեն մի փոս, ամեն մի գետ ու եկեղեցի այսօր դեռ լեցուած են յօշոտուած, այլանդակուած ու քայքայուած հայ դիակներով... Գրեթէ ամբողջ չորս ամիս է որ Բաղէշը գրաւուած է. շրջանիս դեռ ևս չգրաւուած լեռնային մասերում մինչև օրս անվնաս կան մօտ 3—4000 հայեր, որոնք գերութիւնից չեն կարողացել ազատուել միմիայն մի քանի հազար ռուբլու պակասելու պատճառով... Հայ կազմակերպութիւնների ուշադրութիւնն ենք հրաւիրում Բաղէշի վրայ. անհրաժեշտ է թեթևացնել նահատակների շարքերից ազատուածների սուր կարիքները...

—

Բիթլիսից Մուշ հեռագրուած է, որ Առաքելոց Վանքի խորանի պատմական դուռը անվնաս գտնուել է այնտեղ և ուղարկուած է Թիֆլիս։ Վեհ. Կաթողիկոսի կողմից կարգադրուած է, դուռը ստանալուն պէս ուղարկել Էջմիածին։

—

Բաղէշից Սեպուհը հեռագրում է.—Քիւրդերը մրցումի ելած են հայերին ազատելու գործում. ամեն օր տասնեակ հայեր են գալիս։ Այս երեք օրուայ ընթացքում 250 հայ է ազատ արձակուած. իւրաքանչիւր հայի համար տալիս ենք մէկ օսմանեան ոսկի։ Ում սրտին մօտ է հայի կեանքը, թող աճապարէ փրկելու հայութեան մնացած բեկորները։

Խումբ խումբ գալիս են, բայց սոսկալի դրութեան մէջ. երեսներին գոյն չը կայ, աչքերի մէջ՝ լոյս։ Երկու տարուց ի վեր այնքան են տանջուել, այնքան չարչարուել, որ նկարագրել անկարելի է։ Պատմում են քիւրդերի մօտ մնացածների մասին, որ նրանք աղաչելով եկողներին կտակել են, թէ երբ գնաք հայ քրիստոնեաների մէջ, խնդրեցէք, որ մի փշուր հացի գին ուղարկեն։

# Գրականութիւն

## ՆԵՐԻ՛Ր ԻՆՁ

Ես տեսայ նրան... դալուկը դէմքին,
Աչերը անյոյս յառած երկնքին՝
Աղօթք էր կարդում... իր մեղքի համար...
Խնկի ծխի մէջ չոգած անբարբառ։
Ոգի էր կարծես երկնքից իջած,
Տառապող հոգու վիշտն էր մարմնացած.
Իւր առջև վառուող մոմին էր նման,
Ցնդող ծխի պէս նուրբ, երազական...
Երբ նա ինձ տեսաւ, լցուեց վարանքով,
Աչերը ցօղեց գոհար արցունքով
Ու մեռելային շշունջով կամաց
Դողդոջուն ձայնով «ների՛ր ինձ» ասաց.
Եւ դատապարտեալ ոճրագործի պէս
Կախ գցեց կրծքին իւր գլուխը հեզ
Դարձեալ սեաթոյր յօնքերի տակից
Աչերն ինձ ուղղած՝ այնքա՛ն կարեկից...
Ինչպէս գարնային մատաղ արեգակ
Հաստաշերտ սառոյցն հալում է արագ—
Դառն ատելութեան սառոյցն իմ սրտում
Լուծեց ինձ ուղղած հայեացքը տրտում.
«Ներո՛ւմ եմ ես քեզ», ասացի յուզուած.
«Թող զոյգ շիրիմներն՝ արցունքով ցօղուած,
«Յուշարձան լինին այս սուրբ հաշտութեան.
«Ներո՛ւմ եմ ես քեզ, գնա՛ քո ճամբան.
«Թող ամենուրեք քեզ բախտը ժպտայ,
«Քո աղօթքներին կատարումն տայ...
Թեթև ու աննիւթ՝ ոգի երկնայած,
Նա իմ առջից սահում էր կամաց՝
Աչերն իմ դէմքին յառած շարունակ—
Այնքա՛ն սիրալիր, այնքա՛ն գոհունակ...

Յարութիւն Պետրոսեան

---

## ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ

(Վանի նահանջի տարեդարձի առթիւ)

1.

Ոտքներս պնդացրած՝ փոշիի թանձր շերտի միջով գնում ենք, հա գնում... Եւ այն միտքը, թէ Վայ-Վայ Թարլասից մինչև Սև-Գետը խմելու ջուր չկայ, այժմեանից արդէն գրգռում է մեր ծարաւի զգայնութիւնը։

Քրտինքը ճո՛ղ-ճո՛ղ չրչռում է մեր ճակատից և բարձրացող ամպանման փոշին խառնուելով նրա հետ՝ դէմքին տալիս է ցեխոտ, այլանդակ կերպարանք։ Մեր շրթունքները արևի բարկ կրակից սկսում է էրուել, կծկուել. զո՛ւր ենք աշխատում լեզուի ծայրով միշտ թրջուած պահել նրա փափուկ թաղանթը. դա աւելի ևս նպաստում է խանձուելուն, պատռտուելուն։

Եթէ մենք մեծերս ենք այսպէս, հապա երեխանե՞րը։

Օ՛, իմ դիւշմանը էն օրին չընկնի... Վանայ ընքոյշ վարդերի պէս մեծացրած մեր շարմաղ ձագուկները, նետահար թռչնիկի նման գլխները մեր ուսերի մի կողմը թեքած, շուշան-երեսները արևի խանձող ճառագայթներին դէմ արած, ոտքները մեր աջ ու ձախ կողքերի լայնութեամբը բանալու, ձեռքներն էլ մեր վզովը պլլելու դատապարտուած՝ նըւում են մեր շալակին՝ առանց արցունքի, որովհետև աչքը սպառել է արդէն իր բովանդակ աղբիւրը... Եւ կարաւանի միօրինակ, տխուր ղօղանջի նման՝ մեր ականջն ի վար հնչո՛ւմ են շարունակ նրանց աղիողորմ, աղաչալից ձայները—«Ջո՛ւր, պուտմը ջո՛ւր... ես մրկա՛յ, դատէ... ես մեռա՛յ, մարէ...»

Ասում են, որ հրէից Եհովան Հագարի զաւկի—Իսմայէլի լացը լսելով՝ իր հրեշտակն ուղարկել է անապատի մէջ մի վճիտ աղբիւր հոսեցրել նրա պապակած շրթունքների առաջ։ Իսկ մեր ամենողորմ Աստուածը այդքան գթոտ չեղաւ հազարաւոր հայ իսմայէլներու աղաչ-հառաչին ի լուր...Եւ ահա մէկը նրանցից՝ որ մեռնում է իր մօրը գրկին...

Գրիչը անզօր է նկարագրել այն սրտախորով տպաւորութիւնը, որ թողեց ինձ վրայ Սև Ճանապարհի այդ անդրանիկ զոհաբերութեան տեսարանը։

Մայրը, մի գիւղացի կին, Մոկաց կողմերից, ճիշտ ճամբի մէջտեղը, փոշիների մէջ, անասունների և մարդկանց ոտների առջևը նստած, իր 4—5 տարու տղան ծնկներին՝ բարձր ձայնով ողբ-գանձ էր յօրինում, կուրծք ծեծում, լաց լինում մեռնող զաւկի վրայ... մինչ տղան, անզգա՛յ մօրը վշտին ու ողբին՝ մարած աչքերը անսիրտ երկնքին յառած՝ բերանը բաց-խուփ էր անում հոգևարքի ջղաձգութեամբ...

Ու չկա՛ր տէրտէր, չկա՛ր գերեզման. ո՞ւմ յանձնէր վշտահար մայրը իր միամօր սիրելի մեռելին և ի՞նչպէս բաժնուէր նրանից...

Տէր Աստուած, մտածում եմ ես. այսքա՛ն շուտ... Դեռ եր-

կու քայլ հազիւ հեռացած մեր տներից, բայց ահա թանկագին ողջակէզների շարքը... Ո՞ւր ես, ծեր, Իսահակի Աստուած...

Հասնում ենք այն փոքրիկ բարձրութեան, որից դէն այլեւս վանը անհետանում է հեռացողի աչքերից. Նստում ենք և աչքերս Այգեստանի կանաչութեան ուղղած՝ փորձում հանգիստ տալ մեր քրտնախաշ, ջարդուած մարմնին։ Ու թռչում ենք մտքով էն զըզզուն աղբիւրների կշտին, որոնք այդ րոպէին թրջում, ցողում են զով ուռիների ոտները և անտէր ու անչափ հոսում՝ ո՜վ գիտէ ուր, մինչդեռ մենք մի կաթիլ ջրի համար մեռնում ենք այստեղ...

Ամբողջ Այգեստանը հեռուից մի արքայական մեծ պարտէզ լինի կարծես՝ ձգուած գեղածիծաղ լճի եզերքին։ Կախարդ Շամիրամի դիւթական պարտէզն էր այդ, որի վրայ, ամեն վերջալոյսին նա իր ադամանդէ թեւերով ճախրում էր վիմակերտ բերդի այն բարձունքներից... Բաղդ պիտի ունենա՞նք արդեօք վերստին մեր քրտինքը սրբելու այդ Եդեմի մէջ։

***

Հեռո՜ւ, ձորակի միջով, տեսնում ենք մարդկանց խմբեր, որոնք ուրախ-ուրախ վազում են դէպի մայր-կարաւանը և ուրիշներ՝ որոնք դիմում են դէպի ձորակը։ Հասկանում ենք, որ ձորակում ջուր է ճարուած։

Մի անգամ չափում ենք այդ հեռաւորութիւնը կտրել-անցնելու խոնջէնքը՝ մեր խմելիք ջրի վայելքի հետ, "սարսափելի՜ է։ Ցամենայն դէպս ոտքի ենք կանգնում. Նստելը միշտ աւելի է ծանրացնում մեր յոգնած մարմինը։ Վերջին կաց-բարովն առնելով վանին՝ ոլորում ենք ճամբաները...

Շտապում ենք հասնել ձորակից վերադարձող երջանիկ մարդկանց, որոնք ջրից կշտացած՝ մի-մի աման էլ պահեստ են բերել հետները։ Թախանձում ենք մի-մի ումպ էլ մեր փոքրիկներին շընորհել, որոնք ջրի ամանների ի տես՝ աւելի եւս գրգռուած՝ «ջո՜ւր, ջո՜ւր» են կանչում...

—Ո՜ւու...— պատասխանում է արհամարհական ձեւով պարոն ջրատէրը.—ես էսկանդար տեղ վազեր եմ, ջէօրով (հազիւ) էսա կոտ ջուրն եմ պիրէ, ապա իմ տղէյներմըց ինչ խմցուցեմ՝ որ ձեզ տամ։ Գէճհան (ահա) ջուր, կանաք՝ տիւք էլ գնացէք, բերէք...

Ամաչում ենք մեր թախանձանքի համար։ Այնքան բնական, իրաւացի ձեւով արտասանեց պարոնը իր «Գէօհան ջիւր, տիւք էլ գնացէք բերէք»-ը, որ մենք սկսում ենք մեզ մեղադրել՝ այդքան տարրական ճշմարտութիւնը չհասկնալու համար...

Բայց մինչև ձորակը կէս ժամուայ ճամբայ է։ Փոխանակ այդքան տեղ դարտուղելու ճամբից և նորից ծարաւելու, մենք լաւագոյն համարեցինք յառաջ շարժուել։ Սակայն կօշիկները սեղմում են ոտները, արդելք լինում արագ քայլելուն։ Ու Վանայ փախստական տիկնայքն ու օրիորդները ստիպւում են հանել կօշիկները և գուլպաներով կամ բոկոտն կոխ տալ փշերի ու խիճերի վրայ առանց ուշք դարձնելու նրանց պատճառած կսկիծներին...

Մի քանի դար ու փոս էլ։ Երեւում է մի պղտոր առու, որի շուրջը եռում են մարդիկ ու անասուններ։ Թո՛ղ պղտոր լինի, ջուր է սակայն անունը։

Վազ ենք տալիս... ու, Տէր Աստուած, հանդիպում մի դեղին, գարշահոտ ցեխախառն առուի, որին Մոռ-առու անունն են տալիս, այսինքն՝ ցեխ-առու...

Անասունները առուի մէջ մտած՝ իրենց աղտեղութիւններով աւելի եւս մթագնում են նրա գոյնը, գարշահոտում նրա համը. իսկ մարդիկ խմո՜ւմ են առանց զզուանքի, ծծո՜ւմ այդ աղաջուրը... Եւ հանգստի վայր են ընտրել այդ ջրափը ու թափել կարաւանը։

Ի՞նչ արած, կարիքը ստրկացնում է մարդկային ճաշակը։ Ու մենք ակամայից մեր երեխաներին էլ ենք հրամցնում այդ «ջուրը», որը, սակայն, անզօր է լինում կոտրել նրանց ծարաւը, այնքան տաք է ու զզուելի։

Էլ հանգստանալու ժամանակը չէ.—վազե՜լ հա՛ վազել, քայլե՜լ շարունակ թափառական հրէայի պէս, մոռացած ոտքերի ցաւը, արևի կրակը, խեղդող փոշին ու ծանր շալակը. և մեր տունն ու տեղը, մեր երեկուան ճոխ ու հանգիստ կեանքը, մեր սարսափելի ու անյայտ վաղն էլ, և միմիայն մի փոր կուշտ, մաքուր ջուր խմելու երջանկութիւնը ծարաւի... Դա՛ էր այդ պապակ վայրկեանի մեր մեծագոյն բաղձանքը...

Թռչնիկ

---

Պատերազմի ընթացքում հրատարակուած գրքեր.—Տպագրական գործի գլխաւոր վարչութիւնը կազմել է 1915 թուի հաշիւը Ռուսաստանի մէջ հրատարակուող գրքերի։ Պատերազմը, բնականաբար, մեծապէս ազդել է նուազման վրայ։ Այսպիսի մի ցուցակ պարզ կը կացուցանի դրութիւնը։

1913-ին լոյս է տեսել 34,006 հրատարակութիւն։ 1914-ին—32,338, իսկ 1915-ին—26,044։

1914-ին օտար լեզուներով եղել է 6817 հրատարակութիւն, իսկ 1915-ին—3481։

1914-ին բոլոր գրքերի օրինակների թիւը եղել է 130,197,102 հատ, իսկ 1915-ին—107,908,823։

Գալով հրատարակութիւնների տեսակներին, թուերը այսպիսի իրողութիւններ են երեւան հանում 1915 թուի համար. պատերազմական բովանդակութեամբ—1,959 գիրք, դասագրքեր—1,991, հաշիւներ և հաշուետուութիւններ—1,703, մանկականները—1,189, կրօնական—955 և այլն։

Շատ օրինակ հրատարակուել են՝ նախ օրացոյցներ—8,240,100. վիպական—3,418,811, դասագրքեր—19,447,982։

Զանազան լեզուներով հրատարակուել են՝ լեհերէն—679, հրատարակութիւն (1914—1391), հայերէն—159 (1914—192), հրէարէն—193 (1914—967), թիւրքերէն—325 (1914—399), վրացերէնը շատացել է—247 (1914-ին—165)։ Նուազել են գերմաներէն լեզուով հրատարակութիւնները, աւելացել—անգլերէն։

# Գիտական

## ՆՈՐ ՏԵՍԱԿԻ ԹՈՒՂԹ

Կահիրէից տեղեկացնում են, որ գտնուեց թուղթ պատրաստելու մի նոր եղանակ «տիֆա» կոչուած այն եղեգնից, որից հնումն Եգիպտոսում պապիրուսն էին պատրաստում։ Փորձերը հիանալի արդիւնք տուին։ Եգիպտոսի սուլթանը և բրիտանացոց գերագոյն գործակալը հնարչին խոստացան ամեն աջակցութիւն, որպէս զի Եգիպտոսում հիմնուի թղթի գործարան և այդպիսով այլես դադարեցուի թղթի ներմուծումը Գերմանիայից և Աւստրիայից ապագայում։

## ՊԱՂ ԼՈՅՍ

Ֆրանսացոց «Թան» լրագիրը հաղորդում է մի նոր գիւտի մասին։ Ինժեներ Դիւսոն ներկայացրել է Ֆրանսիոյ Գիտութեանց ճեմարանին իր նոր երեւան հանած պաղ լոյսի գիւտը։ Այդ նոր լոյսի շնորհիւ, նոյն իսկ լուսաւորուած սրահում, կարելի է թափանցիկ դարձնել և ցոլացնել ուղած տեղը՝ լրագիրների պատկերներ, բաց նամակներ, լուսանկարներ և լուսանկարչական նեգատիւներ։ Այդ լոյսի շնորհիւ կարելի է կինեմաների մէջ գործածուող ցելլիւլոյիդի վտանգաւոր և շուտ բռնկող ժապաւէնները փոխարինել թղթէ ժապաւէններով։ Գիւտը քննել է Ակադեմիան և գոհացուցիչ գտել։

## ՊՈՍՏ-ԱՐԿՂ

ԳՈՐԻՍ, Գայնատային.—Ձի տպուիլ· շատ երկար է։ Խընդրում ենք կարճ գրէք։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի  Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1.  Дозволено военной ценз.